

Գործ՝ նկարիչ Ն. ԺՈՒԿՈՎԻ

# ԼԵՆԻՆԻ, ՓՈՔՐԻԿ ՎԻՏՅԱՅԻ ԵՎ ԾԻԾԵՌՆԱԿԻ ՄԱՍԻՆ

Ծաղիկներից ցողն էր կաթում
Ու լույսի մեջ շողում վճիտ,
Տերևների պարով խայտում,
Օրորվում էր բուրյան կեչին։
Կարծես հյուսված ծիծաղներից՝
Վառվում էին անթիվ վարդեր,
Անուշ ձայնից ծիծառների
Արթնացել էր Գորկան արդեն։
Իր սենյակում՝ պարզ ու լռին,
Խոր քնած էր Իլյիչը դեռ,
Եվ նրա մոտ, հենց աթոռին
Շարված էին գրքեր, թերթեր։
Որ երկիրը հզորանար,
Կյանքը դառնար ավելի ջերմ,
Պարզ է, ամբողջ գիշերը նա
Կարդացել էր ու անրջել։
Եվ երանի քունը այդպես
Հաճախ հաղթել կարողանար,
Որ առաջնորդը հանճարեղ
Գոնե մի քիչ հանգստանար։
Եվ այդ պահին լսվեց մի ձայն.
— Լենին քեռի՛, Լենին քեռի՛,
Դեռ չի զարթնել, ա՜յ քեզ զարմանք...
Կամ տանը չէ նա երևի։—
Բայց փեղկերը պատուհանի
Դողդողում են, հետո բացվում,
Եվ մի վայրկյան արծաթահունչ
Ծիծաղով է շուրջը լցվում։
— Ի՞նչ կա, Վի՛տյա, ա՛յ դու շեկլիկ.
Շուտ ես զարթնում աքաղաղից,
Եվ դու՛ ես միշտ բոլորից վաղ
Ընկերներիդ կանչում խաղի։
— Ծիծեռնակ եմ բռնել, տեսե՛ք,
Վիրավորված է նա թևից,

Հարկավոր է նրան բուժել։
Դեղ կունենաք դուք երևի։—

Ծիծաղում է Իլյիչը լուռ,
Մի պահ թախծոտ ու անսովոր.
Ծիծաղում է Իլյիչը լուռ,
Նայում թևին իր վիրավոր
Եվ շշնջում.— Ա՛յ, դա լավ չէ...
Բայց չենք թողնի երկար տուժի,
Վիրաբույժ չենք. բայց կաշխատենք
Ետ չմնալ վիրաբույժից։
Անցել էին. անցել օրեր,
Ամոքվել էր ծիծառն արդեն.
Նա երգում էր առաջվա պես,
Առաջվա պես ճախրում թեթև։
Թևածում էր առաջվա պես,
Երգով երկինք էր խոյանում.
Իլյիչն այդ երգը լսելիս՝
Իր թևի ցավն էր մոռանում։

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

ԱՊՐԻԼ
№ 4 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԿԻՏՐՈՆՆԵՐԸ

*ՍԵՐԳԵՅ ԱՆՏՈՆՈՎ*

Երբ բոլոր երեխաները հավաքվեցին նախաճաշի, մանկապարտեզի դաստիարակչուհի Աննա Սեմյոնովնան բարձր ասաց.

— Հանգի՛ստ, երեխանե՛ր։

Ճաշարանում լռություն հաստատվեց, թեև Վասյան շարունակում էր ճլթացնել Անդրյուշայի ծոծրակին այն բանի համար, որ նա նախաճաշից առաջ իրենից խլել էր ձուկը։

—Երեխանե՛ր,— հանդիսավոր շարունակեց Աննա Սեմյոնովնան,—այսօր ձեզ համար կլինի կիտրոնով թեյ։ Իսկ ճաշին՝ կիտրոնից կիսել։ Ո՞վ գիտե, ի՞նչ բան է կիտրոնը։

Երեխաները լռում էին։ Նրանց մեծամասնությունը չգիտեր կիտրոնն ինչ բան է։ Որոշ երեխաներ մեծերից լսել էին կիտրոնի մասին, բայց երբեք ոչ միայն չէին կերել, այլև չէին տեսել։ Միայն մի տղա՝ Լյոնյա Վոսկոմնիկովն էր կիտրոն կերել։ Երբ Լյոնյան հիվանդացել էր կոկորդի բորբոքումով, հայրը գնացել էր սև շուկա և սպեկուլյանտներից կիտրոն էր ճարել ու բերել տղային։ Լյոնյան վախենում էր այդ մասին ասել. մեկ էլ կմտածեն, թե ինքը բուրժույ է։

Ճաշարանում լռում էին։

Հազար ինը հարյուր տասնինը թվականի գարունն էր, դաժան պատերազմի, սովի, ավերմունքի տարին, երբ ուզածի չափ հաց էլ չէին ուտում։

— Չգիտե՞ք,— հարցրեց Աննա Սեմյոնովնան։— Կիտրոնը, երեխաներ, ահա՛ թե ինչ է։— Եվ նա երկարեց ձեռքը, ափում ցույց տալով դեղնագույն ինչ-որ բան՝ կլոր, փոքր կետիկներով։

Եվ հանկարծ բոլորը ձգվեցին առաջ. ոմանք լարվածությունից սառեցին, իսկ մյուսների աչքերը հետաքրքրությունից ու հիացմունքից մեկեն սկսեցին վառվել։

Այնպիսի լռություն տիրեց, որ կարելի էր լսել, թե ինչպես է խոհանոցում ջուրը լցվում կաթսայի մեջ։

— Ինչ որ խնձոր,— Անդրեյի հետ ունեցած իր հաշիվները մոռացած՝ առաջինը բացականչեց Վասյան։

— Ինչ որ սոխի գլուխ,— ասաց Նադյան։

— Քա՞ղցր է,— հարցրեց Անդրեյը։

— Կիտրոնը, երեխանե՛ր, թթու է,— պատասխանեց Աննա Սեմյոնովնան,— աճում է հեռու, տաք երկրներում, ծառերի վրա։

— Իսկ ո՞վ է մեզ ուղարկել այդ կիտրոնները,— հարցրեց Վասյան։

Աննա Սեմյոնովնան հայացքով ընդգրկեց բոլոր երեխաներին, մի պահ լռեց և ասաց.

— Կիտրոնները մեզ ուղարկել է Լենինը։

Այն ժամանակ դեռ բոլոր երեխաները չէ, որ գիտեին, թե ով է Լենինը։ Դրա համար էլ սկսեցին հարցեր տալ Աննա Սեմյոնովնային.

— Նա տաք երկրներո՞ւմ է ապրում։

— Իսկ ինչպե՞ս է մեր մասին իմացել։

— Նա այգեպա՞ն է։



Աննա Սեմյոնովնան, ինչպես կարող էր, պատմեց Լենինի մասին, բայց այն հարցին, թե

Լենինը սրանից է վերցրել կիտրոնները, պատասխանեց.

— Այդ արդեն ես չգիտեմ, երեխանե՛ր։

Իսկ բանն այսպես էր եղել...

Հեռավոր Կովկասից Մոսկվա էր եկել մի բանվոր կոմունիստ, որն այդ ժամանակ Կարմիր բանակի զորամասի հրամանատար էր։ Նա պետք է Լենինին պատմեր, թե ինչպես են գործերը Կովկասում, որտեղ ծանր պայքար էր գնում սովետական կարգերի հաստատման համար. հարկավոր էր Լենինի խորհուրդը և նրա օգնությունը։

Բորիս Իվանովիչ կոմունիստը զանգահարեց Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայային, որին լավ ծանոթ էր, և խորհուրդ խնդրեց, թե ինչպես հաջողեցնի, որ հանդիպի Լենինին։ Նադեժդա Կոնստանտինովնան մի ընկերոջ հրավիրեց տուն։

Եվ ահա Բորիս Իվանովիչը, վերցնելով զամբյուղը, որ այն ժամանակ գործածվում էր ճամպրուկի փոխարեն, ներկայացավ Կրեմլ։

Տրոիցկյան դարպասների մոտ ժամապահը, տեսնելով Բորիս Իվանովիչի անցաթուղթն ու փաստաթղթերը, կասկածանքով խեթ նայեց զամբյուղին։

— Ընկեր Լենինի համար է,— պարզ ու որոշակի արտասանեց Բորիս Իվանովիչը, և նրան զամբյուղով բաց թողեցին Կրեմլ։

Ժողկոմխորհի շենքում, որտեղ ընտանիքով ապրում էր Վլադիմիր Իլյիչը, մուտքի մոտ դարձյալ ժամապահ էր կանգնած։ Նա ստուգեց անցաթուղթն ու փաստաթղթերը և, տեսնելով զամբյուղը, նույնիսկ ձեռք տվեց ու մի քիչ վեր բարձրացրեց այն։

— Ընկեր Լենինի համար է,— կրկնեց Բորիս Իվանովիչը, և ժամապահը նրան բաց թողեց շենք։

Նադեժդա Կոնստանտինովնան սրտաբաց դիմավորեց հյուրին։ Կոմունիստը հանեց վերարկուն, իսկ զամբյուղը դրեց կախարանի մոտ։

Հյուրն ու տանտիրուհին միմյանց այնքան պատմեցին իրենց գործերից ու կյանքից, մինչև որ Վլադիմիր Իլյիչը տուն եկավ ճաշելու։

Լենինը, ծանոթանալով հյուրի հետ, արտակարգ ուրախացավ նրա համար։

Բորիս Իվանովիչին հյուրասիրելով ծավարի ջրիկ ապուրով, Վլադիմիր Իլյիչը հանգամանորեն հարցուփորձ արեց Կովկասում տիրող վիճակի մասին, ցանկանալով ճշգրիտ իմանալ, թե ինչով կարելի է օգնել կովկասյան ընկերներին։

Բորիս Իվանովիչը ուշադիր լսում էր, պատասխանում, իսկ գլխում ամբողջ ժամանակ պտտվում էր միևնույն միտքը... Նա նկատեց, թե ինչպես ավելի քան համեստ, աղքատիկ ճաշը, որը նախատեսված էր չորս հոգու համար, այժմ հավասարապես բաժանված է հինգի։ Վլադիմիր Իլյիչի հետ ճաշի էին նստել Նադեժդա Կոնստանտինովնան, Մարիա Իլյինիչնան, տնային աշխատող Ալեքսանդրա Միխայլովնան և ինքը։ Բայց իր ափսեն, ինչ խոսք, ավելի լիքն էր, քան մյուսներինը։

Ապուրից հետո, երբ մատուցեցին խաշած կարտոֆիլ, տանտերերին, այդ թվում և Վլադիմիր Իլյիչին, բաժին հասավ ընդամենը երկուական կարտոֆիլ։ Բորիս Իվանովիչին էլ երկուսն ընկավ, բայց դրանք ավելի խոշոր էին, քան մյուսներինը։

«Լավ, լավ,— ինքն իրեն ասում էր Բորիս Իվանովիչը,— թող այդպես լինի, ճաշի հարցում, ինչպես երևում է, ոչինչ չես կարող անել. ես ձեր բաժինն եմ ուտում... Բայց պարտքի տակ չեմ



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

մնա...»— և ուրախ մտածում էր, թե ինչպես ինքը զամբյուղը կհանձնի Լենինին։

Զամբյուղում կիտրոն էր. կլիներ փութ ու կես։

Իմանալով, որ Բորիս Իվանովիչը մեկնում է Մոսկվա, կարմիրբանակայիններն ու դեպոյի բանվորները որոշում են Վլադիմիր Իլյիչին կիտրոն ուղարկել նվեր։ Վաղուց չէր, ինչ Լենինը ծանր վիրավորվել էր, ենթարկվել լուրջ վիրահատման և լավ սննդի կարիք ուներ, հատկապես մրգերի։ Դենիկինը զավթել էր Հյուսիսային Կովկասը, Կուբանը և համարյա ամբողջ Դոնի մարզը,

այնպես որ Կովալյովի համար հեշտ չէր հասնել Մոսկվա, այն էլ զամբյուղով:

Ճանապարհին Բորիս Իվանովիչը հիվանդացել էր, զամբյուղը պահպանել էր մի տղա, որի անունը նույնպես Բորիս էր: Հետո խուզարկության ժամանակ քիչ էր մնացել զրկվեր զամբյուղից: Գնացքից-գնացք փոխադրվելով, Բորիս Իվանովիչը զամբյուղի հետ միասին այնուամենայնիվ ընկավ դենիկինականների ձեռքը: Նրան փրկեց կայարանի վրա պարտիզանների ջոկատի հարձակման ժամանակ առաջացած խուճապը:

Հիմա այդ բոլորը անցել էր. զամբյուղը հասել է Լենինին: Ընկերների խնդրանքը կատարված է... Եվ Բորիս Իվանովիչը ուրախանում է ու հազիվ նկատելի ժպտում ինքն իրեն...

Եվ ահա, երբ ավարտեցին ճաշն ու զրույցը, Բորիս Իվանովիչը, տանտերերին շնորհակալություն հայտնելով, ասաց.

— Այժմ, Վլադի՛միր Իլյիչ, թույլ տվեք ձեզ հանձնել մի նվեր մեր բանվորների ու կարմիրբանակայինների կողմից:

— Ի՞նչ նվեր,— միանգամից ուշադրությունը լարեց ու խոժոռվեց Լենինը:

Բորիս Իվանովիչը բերեց զամբյուղն ու բաց արեց: Այնտեղից տարածվեց ինչ-որ հեռավոր հարավի, թարմության ու արևով հագեցած մի բուրմունք:

— Հրաշալի կիտրոններ են, գերազանց կիտրոններ,— հոտ քաշելով արտասանեց Վլադիմիր Իլյիչը, և տնային աշխատող Ալեքսանդրա Միխայլովնային վճռական ասաց.— Սա՛նյա, կիտրոններն անմիջապես տարեք մանկատուն: Անհապա՛ղ:

— Վլադի՛միր Իլյիչ...— փորձեց առարկել շփոթված Բորիս Իվանովիչը,— Վլադի՛միր Իլյիչ, ես հանձնարարություն եմ կատարում...

— Ո՛չ մի նվեր,— ջղայնացած ընդհատեց նրան Լենինը,— սա ի՞նչ բան է: Մանկատո՛ւն ուղարկել:

Տնային աշխատողը դժվարությամբ բարձրացրեց ծանր զամբյուղը և տարավ խոհանոց: Իսկ Լենինը, հրաժեշտ տալով հյուրին, գնաց:

Բորիս Իվանովիչն ու Նադեժդա Կոնստանտինովնան լուռ լսում էին, թե ինչպես են Ժողկոմխորհի միջանցքում հնչում հեռացող Լենինի ոտնաձայները:

Հետո, երբ ոտնաձայները թուլացան, սրտնեղված Բորիս Իվանովիչը ծանր հոգոց հանեց:

Հոգոց հանեց և Նադեժդա Կոնստանտինովնան:

— Է՜խ, Բորի՛ս Իվանովիչ, Բորի՛ս Իվանովիչ, դեռ զինվորական էլ մարդ եք,— մեղմ խոսեց նա:— Ինչո՞ւ ինձ չասացիք, որ դրանք կիտրոններ են: Ես գոնե մի հատ կվերցնեի Վոլոդյայի համար: Ախր նա այնպե՜ս է սիրում կիտրոն, այնպե՜ս է սիրում:

Թարգմ. ԷԴՎԱՐԴ ՇԱՀԻՐՅԱՆ

# ՊԱՐԱՊՈՒՏՈՒՄ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Մի անգամ Ալիկը դպրոց բերեց մի գիրք: Նա գիրքը դրեց սեղանի վրա ու աչքի տակով շուրջը նայեց: Երբ տեսավ, որ ոչ ոք ուշադրություն չի դարձնում, ասաց.

— Տե՛ս, ի՛նչ է նկարված:

Իսկ այնտեղ նկարված էր փոքրիկ գլխով, երկար վզով մի կենդանի: Բայց ես այնպես ցույց տվեցի, որ ինձ համար միևնույն է, և ասացի.

— Սովորական կենդանի է:

— Ինչպե՞ս թե սովորական,— զարմացավ Ալիկը,— քո կարծիքով միգուցե սա փի՞ղ է:

— Փիղ չէ՛, բայց փղից էլ լավ չէ՛,— ասում եմ:

Իսկ Ալիկը ուղղակի կպել է և պոկ չի գալիս.

— Իսկ քո կարծիքով սա ի՞նչ է, միգուցե մրջյո՞ւն:

— Գուցե և մրջյուն է,— ասում եմ ես,— հետո ի՞նչ:

— Իսկ դու նայի՜ր,— արդեն գոռում է Ալիկը:

Ես նայեցի և ի՛նչ: Դա մի սովորական մարդ էր, իսկ և իսկ մեզ նման: Բայց զարմանալին այն էր, որ նա նկարված էր այդ կենդանու կողքին և նրա ոտքի կեսի կեսից էլ փոքր էր:

Հենց այդ ժամանակ եկավ Վանիկը: Նայեց ու ասաց.

— Ինչ փոքր մարդ է՜:

— Բոլորովին էլ փոքր չէ,— բացատրում է Ալիկը,— այդ կողքի կենդանին է մեծ:

Հետո բոլորը թափվեցին ու սկսեցին նայել: Ալիկն ասաց.

— Եթե ուզում եք, կարող եմ պատմել: Այնքա՜ն հետաքրքիր է, այնքա՜ն հետաքրքիր...

— Հարկավոր չէ,— ասում է Հովիկը,— եթե այդքան լավ է, ավելի լավ է, տուր կարդանք:

Նա տարավ կարդաց, իսկ հետո գիրքը տվեց Սուրիկին, Սուրիկն էլ՝ ինձ:

— Դե տե՛ս, հենց վերջացրիր, ինձ կտաս,— ասաց Վանիկը,— միայն թե շուտ:

Ես կարդացի գիրքը: Շատ հետաքրքիր էր: Այնտեղ պատմվում էր հեռավոր ժամանակների մասին, երբ երկրի վրա ապրելիս են եղել մամոնտներ, թրաժանիք վագրեր և շատ ուրիշ կենդանիներ:

Հետո գիրքը տվեցի Վանիկին: Երբ նա էլ վերջացրեց, վազելով եկավ ու ասաց.

— Այ թե գիրք է հա՛: Երանի նրան, ով տեսել է այդ կենդանիներին:

— Ոչ ոք էլ չի տեսել,— ասում եմ,— հիմա



այդպիսի կենդանիներ չկան, միայն նրանց ոսկորներն են գտնում։

— Այդ առանց քեզ էլ գիտենք,— ծեռքն է թափ տալիս Վանիկը,— իսկ կարծում ես այդպիսի կենդանիների ոսկորներ գտնելը քի՞չ բան է։

Մենք մի քիչ էլ խոսեցինք, հետո Վանիկը գնաց։ Բայց մի ժամ էլ չէր անցել, երբ նա նորից ներս ընկավ։

— Գիտե՞ս ինչ, եթե ուզենանք, մենք էլ կարող ենք այդպիսի կենդանիների ոսկորներ գտնել։ Այն ժամանակ բոլորը կխոսեն մեր մասին։

— Իսկ որտեղի՞ց,— հարցնում եմ։

— Պարապուտից, կգնանք այնտեղ և կփորենք։

— Ախր այնտեղ ոչինչ էլ չկա։

Իսկ Վանիկը իրենն է պնդում.

— Կփորենք, կփորենք, մեկ էլ տեսար, մամոնտի հսկայական ժանիքներ գտանք։

«Իսկապես,— մտածում եմ,— ի՞նչ կլինի, եթե փորձենք»։

Մենք որոշեցինք երեկոյան գնալ պարապուտ։

Նստել եմ դասերս սովորելու, իսկ գլխումս շարունակ ինչ-որ կենդանիներ են։ Կարդում եմ ու ոչինչ չեմ հասկանում։ Մի կերպ դիմացա մինչև երեկո և ինձ դուրս գցեցի։ Վանիկն արդեն սպասում էր։ Մենք ներքնահարկից հանեցինք բահերը, մի քլունգ ու գնացինք։

Պարապուտը ամայի էր։

Սկսեցինք փորել։ Սկզբում հեշտ էր, մինչև անգամ հաճելի, իսկ հետո ավելի շատ քար էր դուրս գալիս, քան հող։ Երբ փորելը դժվարացավ, մենք մի քիչ հանգստացանք։ Հետո նորից սկսեցինք փորել։ Փորում ենք, փորում, և միայն քար ու հող է դուրս գալիս։ Իսկ վերջում գտանք կավե կճուճի մի կտոր և ծառի փտած արմատ։

Սկսեցինք մի ուրիշ տեղ փորել և էլի ոչինչ չգտանք։ Երբ այնպես հոգնեցինք, որ հազիվ էինք բռնում բահերը, գնացինք տուն։

Առավոտյան հազիվ արթնացա և վազեցի դպրոց։ Նոր էի մտել դասարան, երբ լսեցի Ալիկի ձայնը։

— Ռուբի՛կ, երեկ ինչ-որ հիմարներ պարապուտում փոսեր են փորել, տեսե՞լ ես։

— Հիմարը դու ես,— անկյունից գոռում է Վանիկը.— եթե փորել են, ուրեմն հարկավոր է։

— Հը՞, չլինի այդ դուք եք փորել,— ասում է Ալիկը։

— Ա՛յդ էր պակաս,— ասում ենք մենք,— ինչու՞ պիտի փորեինք։ Կարծես ուրիշ անելիք չունենք։

Նստեցինք մեր տեղը։ Վանիկը քաշում է թևիցըս ու աչքով անում։ Այսինքն՝ ամեն ինչ անցավ։

Բայց հանկարծ Սուրիկն ասում է.

— Երևի այնտեղ գանձ են փնտրում։

— Այո՛,— հաստատում է Ալիկը,— հարկավոր է գնալ և ստուգել։

— Ի՛ ի՞նչ,— վեր թռավ Վանիկը։

Այդ ժամանակ զանգը տվեց, և մենք ցրվեցինք մեր տեղերը։

Երեկոյան նորից գնացինք պարապուտ։ Միայն այս անգամ թաքնվեցինք և մի լավ դիտեցինք շուրջը։ Բայց ոչ ոք չկար։

— Ես այդպես էլ գիտեի, որ չեն գա,— ասաց Վանիկը,— ախր, նրանք վախկոտնե՞ր են։

Ու փորում ենք փոսը փոսի հետևից։ Փորում ենք, բայց ասես միայն փորելու համար։

— Իսկական տղամարդը երբեք չպետք է հուսահատվի,— ասում է Վանիկը։

Ու շարունակում ենք փորել։

— Է՛յ դուք,— լսում ենք հանկարծ,— կորե՛ք այդտեղից։

— Նրանք են,— հուսահատ շշնջում է Վանիկը։

Մենք պառկեցինք կիտված հողի հետևը, որպեսզի չճանաչեն։

— Է՛յ դուք,— լսում ենք նորից,— կորե՛ք այդտեղից, թե չէ վատ կլինի։

Իսկ Վանիկը գոռում է.

— Ավելի լավ է, դու՛ք գնացեք, թե չէ մի լավ կջարդենք։

Բայց փոխանակ գնալու, նրանք դուրս եկան պատի հետևից և քայլեցին ուղիղ մեր կողմը։ Մենք ստիպված կանգնեցինք։

— Ի՞ի՛նչ,— ասում է Ալիկը,— այդ դո՞ւք եք։

— Հապա էլ ո՞վ կարող էր լինել,— հպարտացավ Վանիկը։

— Իսկ ինչո՞ւ եք փորում,— հարցրեց Ալիկը։

Մենք նրանց ամեն ինչ բացատրեցինք։

— Մի՞թե այստեղ մամոնտներ են լինում,— հարցրեց Սուրիկը։

— Մամոնտներ չեն լինում,— բացատրում է Վանիկը,— բայց նրանց կմախքները լինում են։

— Իսկ դու որտեղի՞ց գիտես,— չէր դադարում Սուրիկը։

— Ինչպե՞ս թե որտեղից,— ստեց Վանիկը,— անցյալ անգամ այստեղից մեկը մի ամբողջ մամոնտ տարավ։

— Որ այդպես է, մենք էլ ենք ուզում աշխատել,— ասացին նրանք։

Գործը հեշտացավ։ Ալիկն ու Սուրիկը փորում էին, իսկ ես ու Վանիկը՝ հանգստանում։ Հետո մենք էինք փորում, նրանք էին հանգստանում։

— Իհա՛րկե,— ասում է Ալիկը,— ավելի լավ է գիրք կարդալ։

Իսկ Վանիկը թե՝

— Դուք գիտեք։ Ես մենակ էլ կգնամ։

Հազիվ էի դասերս սովորել, երբ գլխապատառ ներս ընկավ Վանիկը։

— Գտա՜,— գոռաց նա,— ասում էի, չէ՞։

— Ի՞նչ էիր ասում։

Իսկ Վանիկը միայն գոռում է ու թևիցս քաշում.

— Շո՛ւտ, գնանք պարապուտ, ի՜նչ եմ գտել, ի՜նչ։

Ու մենք սլացանք։

— Այդ ո՞ւր,— պատուհանից կանչեց Ալիկը։

— Շո՛ւտ արի պարապուտ,— շնչակտուր գոռաց Վանիկը,— ի՜նչ եմ գտել, ի՜նչ։

Մենք հասանք պարապուտ։ Վանիկը տարավ մի փոսի մոտ ու ասաց.

— Նայի՛ր...



Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

Բայց էլի ոչինչ չկար ու չկար։ Այդ ժամանակ Սուրիկն ասաց.

— Արդեն քանի ժամ է փորում ենք, իսկ ձեր մամոնտները չկան։

— Ճիշտ է,— ասում եմ ես,— միայն իզուր ժամանակ ենք կորցնում։

Մենք վերցրինք բահերն ու քլունգը և քաշ եկանք դեպի մեր տները։

Հաջորդ օրը Վանիկն ասաց.

— Այսօր անպայման մի բան կգտնենք։

— Ո՛չ,— ասում եմ,— ինչ ուզում ես գտիր, բայց ես չեմ գա։

Նայում եմ և ի՜նչ։ Փոսի մեջ դուրս է ցցվել մի ահագին ոսկոր։

Վազելով եկավ Ալիկը։

— Սա հո հսկայական մամոնտի ոսկոր է։

Մենք վերցրեցինք բահերն ու սկսեցինք փորել։ Հետո եկավ Սուրիկը։

Փորում ենք, փորում, իսկ վերջը չի երևում, թեև ոսկորը արդեն մի մետր դուրս է ցցվել։

— Դա հավանորեն կնճիթն է,— ասում է Վանիկը։

— Բարև ձեզ,— ասում եմ,— որտե՞ղ ես տեսել այդպիսի կնճիթ։ Դա ողնաշարն է։

Մենք առագին չարչարվեցինք: Հետո հանեցինք ոսկորները, գլուխը, որը ամենափոքր փղի գլխից էլ փոքր էր և ժանիքներ չուներ:

— Սա մամոնտի ձագ է,— ասում է Ալիկը:

Մենք սկսեցինք վիճել: Վանիկն ու Սուրիկը գոռում էին, որ հարկավոր է էլի փորել, երևի ժանիքներն ավելի խորն են: Իսկ ես ու Ալիկը գոռում էինք, որ դա մամոնտի ձագ է, իսկ ձագերը ժանիքներ չունեն: Նրանք իրենցն էին ասում, մենք՝ մերը, և մեկս մյուսին չէր լսում:

Այդ ժամանակ եկավ փոքրիկ Գագիկը:

— Խեղճ ձի, ե՞րբ է մեռել,— ասաց նա:

— Ի՞նչ ձի,— անմիջապես նրա վրա հարձակվեց Վանիկը,— այդ որտեղի՞ց հնարեցիր:

— Սա ձիու գլուխ է,— ասում է Գագիկը,— ես նկարում եմ տեսել:

— Եկեք,— ասում է Ալիկը,— գնանք Օհան պապի մոտ, նա կիմանա:

Գնացինք և սկսեցինք մեկս մյուսին ընդհատելով պատմել: Այդ ժամանակ Օհան պապն ասաց.

— Դե՛, դե՛, ավելի լավ է, գնանք ցույց տվեք:

Երբ նա տեսավ, գլուխն օրորեց ու ասաց.

— Ա՛յ, ա՛յ, ա՛յ: Ախր սա իմ ձին է:

— Ձեր ձի՞ն,— աչքերը չռեց Վանիկը,— բայց ախր սա մամո՜նտ է:

— Ո՜չ, այդ մեկը չեղավ,— գլուխն օրորեց Օհան պապը,— սա իմ ձին է: Այն ժամանակ այս շենքերը չկային և այստեղ լայն դաշտ էր: Երբ իմ ձին ծերացավ ու սատկեց, ես նրան թաղեցի այստեղ: Խե՜ղճ կենդանի:

Մենք ձիուն նորից գցեցինք փոսը, ծածկեցինք հողով և տխուր նստեցինք հողաթմբին:

— Տղաներ,— ասաց Օհան պապը,— ինչո՞ւ դուք մի բարի գործ չեք կատարում:

— Իսկ ի՞նչ անենք,— ասում եմ ես:

— Ինչպե՞ս թե ինչ,— զարմացավ Օհան պապը,— այ, դուք այսքան փոսեր եք փորել: Լավ չէ՞ր լինի, եթե տնկիներ բերեիք ու ծառապատեիք պարապուտը:

— Ճի՜շտ է,— բղավում ենք միաբերան: Մենք կունենանք մեր այգին:

Հաջորդ օրը Օհան պապի հետ գնացինք մի քեռու մոտ, որը պտղատու ծառերի շատ տնկիներ տվեց մեզ:

Մենք տնկիները բերեցինք պարապուտ: Բայց տնկիներն ավելի շատ էին, քան փոսերը: Մենք սկսեցինք նոր փոսեր փորել: Այդ ժամանակ եկավ Հովիկը, նայեց ու ասաց.

— Ա՛յ թե հիմարներն եք, հա՛: Մենք ծիծաղում էինք, իսկ մարդիկ կարգին գործի համար են փորել:

Նա Սուրիկի ձեռքից խլեց բահը և սկսեց փորել: Հետո եկան Արայիկը, Աչիկը և մյուսները: Եկավ նույնպես փոքրիկ Գագիկը: Մի խոսքով, այնքան շատացանք, որ բահերը հերիք չէին անում: Օհան պապը նրանց համար նոր բահեր բերեց, և բոլորն էլ սկսեցին աշխատել:

Հետո մենք տնկեցինք տնկիները, ջրեցինք, ու Վանիկն ասաց.

— Սա ավելի լավ է, քան մամոնտի ոսկորներ փնտրելը:

— Դե, իհարկե,— ասում եմ ես,— փորում ես, փորում, ոչինչ չկա:

Մենք հերթապահության ցուցակ կազմեցինք ու կախեցինք ամենամեծ տնկիից և ամեն օր ջրում ու խնամում էինք:

Իսկ տնկիները շուտով բողբոջեցին: Ամռանը տնկիներն արդեն բարակ ճյուղեր էին արձակել, իսկ ճյուղերի վրա կային փոքրիկ, կանաչ տերևներ:

# ԱՌԱՎՈՏԸ ԳՅՈՒՂՈՒՄ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Աքաղաղը զիլ կանչեց.
— Լու՜յս է, ծուղրուղու՜...—
Զալոնի դռանը հաչեց.
— Դա՜շտ եք գնալու...

Աղմկեցին ճուտ ու հավ,
Բակ թռան ճիչով.
Ձին դոփդոփեց, հանդ ելավ
Զվարթ խրխինջով:

Արագիլը թռավ վեր.
— Արթնացե՛ք, կափ-կա՛փ...
Առավոտ է, ճուտիկնե՛ր...
Կքնե՞ն այդչափ:

Անտառն ասաց շշուկով.
— Դե սու՜ս արեք, սու՜ս...—
Օդը լցրին գոլ շնչով
Քնկոտ հող ու բույս:

Արեգակը գլխաբաց
Բարձրացավ սարին,
Նայեց ուրախ ու ժպտաց
Ամբողջ աշխարհին:

Աղբյուրները երգեցին,
Կարկաչեց առուն,
Ու գետերը ցնծացին.
— Ողջու՜յն քեզ, գարու՜ն...

# Ձեռքեր

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Արևն արդեն մայր էր մտել, բայց Արագածի գագաթը դեռևս ողողված էր վերջալույսի ցոլքով։

Ախուրյանի ափին պառկած՝ նայում էի, թե ինչպես են իրար հաջորդում մայրամուտի երանգները, ինչպես է վիթխարի մոմի պես մարմրում լեռան բարձունքը։ Նայեցի այնքան, մինչև մթնշաղի կապտությունը թանձրացավ, երկինքն ու լեռան գագաթն իրար ձուլվեցին, և «գիշերային հերթափոխի» դուրս եկավ լիալուսինը՝ հանդիսավոր ու տիրաբար։ Այդպիսի լուսին քաղաքում երբեք չէր տեսնի։ Ուրի՞շ է լուսինը գյուղում, գետափին, կանաչ դաշտում, մանավանդ, եթե 12—13 տարեկան ես և փորձել ես լուսնի լույսի տակ արկածային գրքեր կարդալ...

Մութն ընկնելուն պես աշխարհն իմ աչքին նորից փոխվեց, դարձավ խորհրդավոր, կախարդական։ Շիրակի դաշտը նորից թվաց կանաչ բեմ, լուսինը՝ թատերական լուսարձակ, գորտերն ու ծղրիդները՝ համերգի դուրս եկած կախարդված երգիչներ, գետը՝ նվագակցող երգեհոն կամ հուշարար, արևածաղիկներն ու կարտոֆիլի թփերը՝ հրաժշտասեր հանդիսականներ... Դրանցից ամենանշանավորները երկուսն էին՝ Տխուր կերպարի ասպետ Դոն Կիխոտը և նրա հավատարիմ զինակիր Սանչո Պանսան։ Դոն Կիխոտը մեր բանջարանոցի ամենաբարձր արևածաղիկն էր, իսկ Սանչոն կարճ էր ու լայնատերև։ Դոն Կիխոտի ձիու՝ Ռոսինանտի և Սանչոյի ավանակի համար համապատասխան թեկնածուներ չգտնելով՝ ստիպված էի պատկերացնել, թե դրանք իբր արածում են մոտակայքում... Երբեմն պառկում էի կանաչ խոտերին, աչքերս ու ականջներս փակում, փորձում երևակայությամբ լսել Ռոսինանտի վրնջյունը և Սանչոյի ավանակի... Ոչ, իմ սիրած հերոսի ավանակն իմ աչքին շարքային էշ չէր և իրավունք չուներ իր հասարակ ցեղակիցների նման զռալու։ Նա պետք է հաներ... Ինքս էլ չգիտեի, թե ինչ ձայն պետք է հաներ խեղճ կենդանին, համենայն դեպս այդ ձայնը նույնքան պետք է ներշնչող լիներ, որքան, ասենք, մարտական գալարափողի հնչյունները։

Այդ գիշերն ինձ համար առանձնապես խորհրդավոր էր, քանի որ սրտատրոփ սպասում էի «ավազակների հարձակման»։ Ինքս էի տղաներին հրավիրել վարունգ գողանալու։ Ինձ թվում էր, թե դա շատ հետաքրքիր է։ Ինքս երբեք գողություն չէի արել, և գողություն անողներն ինձ, չգիտես ինչու, մի տեսակ հերոսներ էին թվում։ Հետո, իհարկե, շատ զղջացի։ Ես նույնիսկ կվիրավորվեի, եթե փոքրիկ «ավազակները» հայտնվեին սովորական ճանապարհով։ Հույս ունեի, որ կգան գետի մյուս կողմից։ Այստեղ արդեն բաց էի թողնում երևակայությանս սանձերը։ Պատկերացնում էի, թե գետափին կհայտնվեն, շորերը կկապեն գլխներին, ավելի լավ լողալու համար մարմինները կօծեն կետի յուղով և ատամների արանքում դաշույններ սեղմած՝ կնետվեն գետի կատաղի



ալիքների մեջ։ Ի՞նչ կարևոր էր, թե Ախուրյանի ջուրն ամռան ամիսներին հազիվ էր ծնկներս ծածկում։ Իմ երևակայության մեջ հայրենի գետն ամեն գիշեր մեծանում էր, դառնում Ամազոն։ Իսկ այդ գիշեր իմ «ավազակները» պարտավոր էին ափ դուրս գալուց առաջ սպանել առնվազն մի քանի կոկորդիլոս...

Ես ինձ հանցավոր չէի զգում, չնայած մեր սեփական բանջարանոցը դնում էի գողերի տրամադրության տակ։ Դատում էի այսպես։ Հայրս բարի մարդ է և բոլոր անցնող-դարձող համագյուղացիներին հյուրասիրում է։ Ուրեմն՝ ի՞նչ մեծ բան է, եթե տղաներն այս անգամ հորս նեղություն

չտան, իրենց ձեռքով պոկեն «իրենց հասանելիք» վարունգները։

Հերոսները դժվարությամբ են հաղթանակ ձեռք բերում։ Այդ պատճառով էլ վճռեցի ստեղծել դժվարություններ։ Ծանր ու թեթև արի, թե ինչն ավելի շատ կվախեցնի «ավազակներին»։ Ինքս իրավունք չունեի նրանց հետ կռվի բռնվելու։ Չէ՞ որ դա կլիներ ուխտադրժություն։ Էլ ինչո՞ւ էի հրավիրում։ Դրա համար ինձ կարող էին մի լավ «ավազակաջարդ» տալ։ Այնպես որ այդ հնարանքն ինձ այնքան էլ չէր հրապուրում... Ուրեմն՝ պետք է գտնել մի այլ, ինձ համար անվնաս միջոց։ Ի՞նչ անել։

Հայրս գնացել էր ջրբաժան առվից ջուր կապելու. մերոնք այդ օրը գյուղում էին, և ես լիակատար հնարավորություն ունեի փորձելու իմ թատերախաղը։ Սկսեցի գազանների արքայի՝ առյուծի մռնչյունից։ Բայց ոչինչ չստացվեց։ Ձայնս շատ էր բարակ և շատ էր անարտահայտիչ։ Շուտով կոկորդս բոր եկավ, սկսեցի հազալ։ Վագրային ու հովազային փորձերս էլ անհաջողության մատնվեցին։ Հուսահատությունից դիմեցի վերջին միջոցին՝ շան պես հաչելուն։ Բայց պարզվեց, որ այդ ասպարեզում էլ ոչ մի տաղանդ չունեմ։ Հաչոցս ո՛չ բնական էր, ո՛չ էլ սարսափելի։ «Միգուցե բվի նման կռնչա՞մ» — անցավ մտքովս։ Կռնչացի մանկական թոքերիս ամբողջ զորությամբ, բայց դեռ լրիվ գաղափար չէի կազմել սեփական ձայնիս մասին, երբ հանկարծ քամի բարձրացավ, թփերը կենդանի արարածների պես դեսուդեն նետվեցին, խշխշացին, զարհուրելի ուրվականների պես ֆշշացին, և ես ամեն ինչ մոռացած՝ գլխապատառ փախա մեր հյուղն ու վառեցի նավթի լամպը։ Վերմակը քաշեցի գլխիս, դողդողալով արտասանեցի հատվածներ «Սասունցի Դավթից», որ կարողանամ մոռանալ «Լոռեցի Սաքոյի» ստվերներին... Այդպես էլ քնեցի, լիովին հաստատելով իմ ամոթալի վախկոտությունն ու խայտառակ նահանջը։

Երբ արթնացա, արդեն սքանչելի առավոտ էր։ Դաշտի վրա ծփում էր կաթնագույն մշուշը։ Տեղ-տեղ խարույկներ էին ծխում։ Շիրակի բոստանչիները նախաճաշ էին պատրաստում, որ քիչ հետո իրար հյուր կանչեն, սկսեն իրենց ամենօրյա անուշ խոսքն ու զրույցը։

Հայրս չէր երևում։ Հավանաբար այնքան հոգնած էր եղել, որ տեղնուտեղը քնել էր։ Դա ինձ համար նորություն չէր։ Այնպես որ այդ պահին ինձ միայն մի բան էր հետաքրքրում. արդյոք եկե՞լ են «ավազակները», թե՞ նրանք էլ ինձ պես մի բանից վախեցել են։ Իսկ եթե եկել են, որևէ հետք, որևէ մակագրություն չե՞ն թողել մարգաթմբերի կամ արևածաղիկների ցողունների վրա...

Ահա և վարունգի մարգերը։ Սարսափած կանգ առա։ Իմ սիրելի ասպետը՝ Դոն Կիխոտ Լամանչեցին այլևս չկար. ջարդել ու գետին էին շպրտել «ավազակները»։ Հավատարիմ Սանչոն մնացել էր մեն-մենակ, որբացած։ Նա գլխիկոր օրորվում էր վաղորդյան քամուց, և նրա դեղին ծաղկաթերթերից ցողի կաթիլները ցած էին թափվում արցունքների պես... Խե՜ղճ Դոն Կիխոտ, խե՜ղճ Սանչո։



Վարունգի մարգերը, որ հայրս հենց այդ գիշերն էր ջրել, նույնպես տխուր տեսարան էին ներկա-

յացնում։ Կարծես հեծելազորային մի ամբողջ գունդ էր անցել բանջարանոցով, տրորել վարունգի թաղերը, չորս կողմ փորփրել թաց հողը... Մի՞թե սա էր իմ երազած արշալույսը՝ այսքան տգեղ, այսքան անմարդկային...

Փոքր-ինչ հեռու, չոր թմբին, հին վերարկուն վրան քաշած՝ հանգիստ, անխռով քնած էր հայրս։ Նա դեռ անտեղյակ էր կատարվածին։ Ես իսկույն գլխի ընկա, երբ հորս գլխավերևում տեսա մախորկայի շուռ տված տուփը, դես-դեն թափթփված լուցկու հատիկները։ Անպիտանները նույնիսկ ծխել էին և, շտապելո՞ւց, թե՞ վախենալուց, ամեն ինչ ցանուցիր արել...

Խղճի խայթ զգացի, և սիրտս ճմլվեց։ Այն, ինչ խեղճ մարդն ստեղծել էր քրտինքով, սիրով ու



գուրգուրանքով, ոտնատակ էր արված։ Ո՞ւր մնացին իմ միամիտ պատկերացումները, իմ երևակայած հերոսության գեղեցկությունը։ Խորապես վիրավորված էի։ Ինձ այնպես էի զգում, կարծես մաքուր, սպիտակ զգեստիս վրա մեկը հանկարծ ցեխաջուր էր շպրտել...

Կուչ եկա հորս կողքին, որը վիթխարի ձեռքը բարձի պես գլխի տակ դրած՝ դեռևս անվրդով քնած էր։ Անասելի ցավով նայեցի նրան։

Հորս մազերն ալեխառն էին։ Դեմքն ազդու էր, բայց և ողողված բարության լույսով։ Մոնումենտալ քիթը հաստատուն էր, ինչպես մայր հողի մեջ մխրճված քարաժայռ։ Բեղերը թավ էին, ծխախոտի ծխից դեղնած և ինձ վրա թողնում էին կիսով չափ հրդեհված ջունգլիի տպավորություն։ Երբ հայրս բերանից բաց էր թողնում իր փաթաթած ցմփոր սիգարետների ծուխը, բեղերի բոլոր մազերից մշուշի թանձր քուլաներ էին բարձրանում, և ես ամեն անգամ սարսափով սպասում էի, թե ահա, ուր որ է, հրդեհ կբռնկի...

Զորավոր ձեռքերը, որ այնպես լավ գիտեին հողի լեզուն և կարող էին երկու քարի արանքում ծաղիկ աճեցնել, գրեթե սևացած էին, ճաքճքված։ Այդ ճաքերը շատ խորն էին։ Խոնարհվեցի և ուշիուշով սկսեցի զննել դրանք, կարծես առաջին անգամ էի տեսնում։ Հենց այդ պահին մի մրջյուն գործնական լրջությամբ բարձրացավ հորս ձեռքն ի վեր, գլորվեց փոսի մեջ և, չկարողանալով հաղթահարել «զառիթափը», տագնապահար վազեց մինչև փոսի եզրը, մի կերպ դուրս պրծավ ու փախավ։

Սիրտս լցվեց հպարտությամբ, և ես անսահման քնքշանքով նայեցի հորս կոշտ, ազնիվ ձեռքերին։

Այդ ձեռքերը կյանքի էին կոչում Ախուրյանի ափին սփռված պարապ հողաբեկորները, շրջակայքը լցնում գույներով, բույրերով, բանաստեղծությամբ։ Այդ ձեռքերի շնորհիվ ամբողջ ամառը ես ինձ զգում էի վարդագույն հեքիաթում։ Առանց այդ ձեռքերի՝ ինձ հազիվ թե այնքան գեղեցիկ թվային հայրենի դաշտը, նրա ցողաթաթախ արշալույսներն ու երազկոտ մայրամուտները, լուսնի ու աստղերի շշուկներով լեցուն գիշերները...

Ես փոքր-ինչ կռացա և հորս մեջքի հետևից նայեցի հանդիպակաց լեռներին։ Հոր ուսերն ու գլխի տակ դրած դյուցազնական ձեռքն ավելի բարձր էին, քան նույնիսկ ձյունապատ Արագածը...

Բայց ես տխուր էի։

Մի գիշերվա մեջ շատ բան էի կորցրել։ Արդեն չկար իմ սիրելի հերոսը՝ Տխուր կերպարի ասպետ Դոն Կիխոտ Լամանչեցին։ Ավելին, նա մեկընդմիշտ զրկվել էր իր խորհրդավոր հմայքից և արդեն ջարդված ու դեն նետված արևածաղիկ էր, սովորական արևածաղիկ...

Պատրանքները չքացան, մնացին հորս ձեռքերը՝ անխոնջ ու աշխարհաշեն։

Ձեռքե՜ր, ձեռքե՜ր... Ի՜նչ լավ կլիներ, եթե բոլոր մարդկանց ձեռքերն էլ այդպես գործի դրվեին միայն բարիքներ ստեղծելու համար...

Տեսնո՞ւմ եք, ես դարձյալ տարվեցի պատրանքներով։

Միշտ էլ այդպես է։ Աշխատանքն ու երազանքն անբաժան են։ Եվ մի՞թե կարելի է ապրել առանց երազելու...

# ՆՈՐ ԽԱԼԻՖԸ

ՍՏԵՓԱՆ ԶՈՐՅԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Բաղդադը հին է, ինչպես աշխարհը:
Եվ Բաղդադի նման քաղաք չկա աշխարհում:
Ինչե՜ր ասեք չեն կատարվել խալիֆների այդ հին քաղաքում, և ովքե՜ր ասեք չեն եղել այնտեղ. իմաստուն ծերեր, որ ապրել են մի թուռ խուրմայով և, աստղերին նայելով, երազել հավերժական արդարություն... Ապրել են այնտեղ օրվա հացի համար իրենց մարմինը տանջող կիսամերկ մարդիկ, կանայք՝ արյուն-արցունքով, և խալիֆներ, որ լողացել են առատության մեջ, խլել են նրանց վերջին պատառը նոր քեֆերի համար, խլել են ծնողներից դեռատի աղջիկներ՝ իրենց հարեմների համար ու զվարճացել ոսկով, արյունով և մարդկային կտրած գլուխներով...




Հին է Բաղդադը, ինչպես աշխարհը, հին է իր ոճիրներով... Հազար-հազար պատումներ կան Բաղդադում, ու մեկն էլ ահա:

Մի անգամ, դարեր առաջ, գահ բարձրացավ մի նոր խալիֆ, անունը՝ Աբբաս. բարձրացավ-չբարձրացավ՝ սկսեց բանտարկել, սպանել ու աքսորել այն բոլոր մարդկանց, ովքեր երբևէ համաձայն չէին եղել հետը, չէին փառաբանում իրեն ու իր գահը և կամ չէին հավանում իր սահմանած կարգը:

Իսկ նա սահմանել էր նոր, Բաղդադում չեղած կարգեր, զարմանալի կարգեր, որ իր իշխանության մեջ բոլորը քնեն միասին՝ նույն ժամին, զարթնեն միասին, ուտեն միասին ու ամեն բանում հնազանդվեն խալիֆին:

—Է՜յ, ժողովո՛ւրդ, մեծ խալիֆը հրամայում է՝ քնեցե՜ք,-կանչում էին խալիֆի մարդիկ Բաղդադի փողոցներում, երբ մութը նոր կոխում էր քաղաքը:-Քնեցե՜ք... Քնեցե՜ք...

Ու մարդիկ քնում էին ահից:

— Է՜յ, ժողովո՛ւրդ, խալիֆը հրամայում է՝ վե՜ր կացեք,-կանչում էին լուսածեգին նույն մարդիկ՝ գուրզով, գավազանով խփելով բոլոր տների դռներին: Վե՛ր կացե՜ք, վե՜ր...

Եվ մարդիկ վեր էին կենում ահի դողով:

—Խալիֆը հրամայում է՝ պարեցե՛ք, պարեցե՜ք...

Պարում էին:

—Հա՜ց կերեք...

Հաց էին ուտում:

—Մի՜ ուտեք...

Չէին ուտում:

Ու ամեն բան անում էին խալիֆի կամքով ու ցանկությամբ: Անգամ, եթե մեկը լու էր բռնում՝ պետք է հարցներ խալիֆի կարծիքը, թե ինչ անի, որովհետև առանց նրա իրավունքի՝ չէր կարող սպանել: Խալիֆն ինքը պետք է հրաման տար, թե լուն ինչով սպանեն՝ սրո՞վ, նետո՞վ, թե՞ կախաղանով:

Այսպես նոր էր նոր խալիֆի սահմանած կարգը:

Հետո, իր հպատակներին ավելի մեծ բարիք անելու համար նա հրամայել էր.

— Դուք մի՛ մտածեք, քանի որ ինքս մտածում եմ բոլորիդ փոխարեն. և ինչ որ պետք է ձեզ ու աշխարհին՝ կանեմ ինքս... Դուք միայն լսեցեք ու հնազանդ եղեք ինձ...

Եվ մարդիկ լսում էին ու լռում:

Հետո, այս խալիֆը իր երկիրը համարում էր Ազատ երկիր, քանի որ հպատակներին ազատել էր սեփական գլխով մտածելու և իրենց կամքով մի բան անելու հոգսից:

Բայց ալլահը գիտի, որ մարդը անսասուն չէ, որ անսասունն էլ խախտում է կարգը և չի հնազանդվում... Ու պատահում էր ահա, որ Բաղդադում էլ լինում էին մարդիկ, որ անտեսում էին խալիֆի սահմանած կարգը, չէին հնազանդվում նրա հրամանին, տրտունջ էին հայտնում երբեմն, և լրտեսները դա հասցնում էին խալիֆի ականջը, ու հետո խալիֆի անունով բանտում էին չհնազանդվողներին, սպանում կամ քշում հեռու վայրեր, ուր նրանք կարող էին մեռնել ազատ ու հնազանդ:



Նոր խալիֆի նոր գործերը տեսնելով՝ պալատի մարդիկ վախից շողոքորթում էին նրան և գովաբանում նրա ծով խելքը, մեծ շնորհքը, աստվածային ուժը:

— Այ, իսկակա՛ն, իմաստու՛ն խալիֆ... Արաբ աշխարհը չի տեսել քեզ նման:

— Դարերի մեջ դու միակ ու անհաղթ:

— Այո՛, խալի՛ֆ, դու կա՜մքն ես ալլահի, դու հրեղեն սո՜ւրն ես արդարության:

Գովում էին այսպես, գովում էին անվերջ թե՛ իր՝ խալիֆի առաջ, թե՛ նրա մարդկանց մոտ, որոնք, հայտնի էր, որ իրենց խոսքը պիտի տանեն խալիֆին:

Ավագ պալատականներից ետ չէին մնում ջահելները.

— Օ՜, խալիֆն արև՜ է մեզ համար...

— Եվ գարնան անձրև՜...

— Եվ թող երկինքը երկա՜ր կյանք պարգևի նրան...

— Ու թուրը կտրուկ լինի՝ իր բոլոր թշնամիներին ջախջախելու համար:

Եվ խալիֆը բախտավոր էր համարում իրեն, որ առավոտից-երեկո այսպիսի խոսքեր էր լսում, կամաց-կամաց սկսում էր հավատալ այդ խոսքերին ու հպարտանալ, որ Բաղդադում չի եղել իր նման հզոր, իմաստուն մի իշխանավոր:

Բայց այս ընդհանուր փառքի ու գովքի մեջ խալիֆին տարակուսում, զարմացնում էր իր պալատականներից մեկը՝ ճերմակամորուս մի ծերունի, որ լռում էր շարունակ և ոչ մի բանով չէր մասնակցում պալատականների մեծարանքին, քծնանքին, այլ ընդհակառակը, տխրում էր սաստիկ, երբ լսում էր նրանց խոսքերը շողոքորթ...

Տեսնում էր խալիֆը ծերունու դժգոհ նայվածքն ու տխրությունը գովքի պահերին... տեսնում էր, բայց լռում:

Եվ մի օր ահա, երբ բոլոր պալատականները հերթով փառաբանում էին նրան և ծերունին նայում էր տխուր ու չէր ասում մի խոսք, խալիֆը հանկարծ արձակեց բոլորին, իսկ ծերունուն կանչեց իր մոտ:

— Ինչու՞ միշտ տխուր ես, ափու՛:

— Ուրախ լինելու առիթ չկա, խալի՛ֆ:

— Եվ մի՞թե իմ կարգերը, իմ գործերը չեն ուրախացնում քեզ:

Պատասխանի փոխարեն ծերունին գլուխը կախեց կրծքին:

— Ինչպես երևում է՝ ինձնից դժգո՞հ ես, ափու՛:

Ծերունին գլուխը չբարձրացրեց:

— Գուցե չե՞ս հավանում կառավարելու իմ ձևը:

— Ո՛չ,—պատասխանեց ծերունին այս անգամ համարձակ:

Խալիֆը զարմացավ.

— Ինչու՞... Մի՞թե պետք է լինեմ ավելի խիստ:

— Խի՜ստ,—երկարեց ծերունին քմծիծաղ:—Խստությունը մեծ շնորհք չէ՜, խալի՛ֆ, և ոչ էլ մարդ բանտարկելը, սպանելն ու աքսորելը... Այդպես անում են անչափ վախկոտ իշխանավորները. միայն նրանք, ովքեր կամենում են իշխել սարսափի ուժով, բռնությամբ... ովքեր վերջապես, չունեն խելքի զորություն և արդար հոգի...

Խալիֆը մռայլվեց սաստիկ ու շուրթը կծեց:

— Իսկ ո՞րն է, ծերուկ, արդար կառավարությունը, ա՞յն, որ թույլ տամ՝ ամեն մեկը անի, ինչ կամենում է...

— Այո՛,—վրա բերեց ծերունին:—Հակառակը, խալիֆ, բռնություն է:

Այստեղ խալիֆն էլ չհամբերեց և սուրը հանեց պատյանից.

— Ես քո գլուխը կկտրեմ. հիմա՛ր ծերուկ:

— Կարող ես, խալի՛ֆ,— և ծերունին, գլուխը կախելով, վիզը երկարեց նրա առաջ:—Եվ դա ցույց կտա, որ դու ճշմարտություն չես սիրում:

— Իսկ ի՞նչ բան է ճշմարտությունը:

— Արդարություն, խալի՛ֆ, և ազատ խոսք, որը հարգելով միայն կարժանանաս ամենքի սիրուն ու հարգանքին:

— Իսկ իմ կատարած գործերը մի՞թե արժանի չեն հարգանքի:

— Ո՛չ, խալիֆ: Երբե՛ք: Դրանք այսօր իսկ արժանանում են և հավետ պիտի արժանանան անեծքի ու նզովքի...

— Բայց ամենքը գոհ են, ծերուկ, և փառաբանում են ինձ:

— Հը՜մ... Փառաբանում են վախից, խալի՛ֆ, վախի՛ց... Իսկ սրտով ատում են քեզ, ինչպես արնախում ոճրագործի:

— Դու այդ ճշմարի՞տ ես ասում, ծերու՛կ:

— Հիմա՜ր... Ես ինքս եմ ճշմարտությունը:

Խալիֆը լռեց մի փոքր, ապա աչքերը ոլորեց զայրացած:

— Ո՛վ կուզես՝ եղիր, խանգարում ես ինձ,—գոռաց նա և սուրը բարձրացրեց ճշմարտության վրա:

Բայց ո՞ր զենքն է վնասել ճշմարտությանը, կամ՝ ո՞վ է կարողացել սպանել նրան...

Բարձրացրած սուրն ընկավ, իսկ խալիֆն ինքը անշունչ փռվեց հատակին:

## ԳԱՐՈՒՆ

ՌԱԶՄԻԿ ՏՈՆՅԱՆ

Գարունն արդեն ելել հողից,
Սարն է բարձրանում,
Արփին բարակ ամպի քողից
Հրճվանք է ցանում:
Թռչկոտելուց հոգնել արդեն,
Գառնուկն է մայում.
Բրդոտ Զալոն պոչը կանթել,
Նրան է նայում:
Գովերգելով շքերթն իրենց՝
Թեթև, երգածայն,
Դպրոցական շարքերի պես
Կռունկներն անցան:
Իսկ պարտեզում, պապիկի հետ
Բահերը առած,
Ծառ են տնկում մեր գանգրահեր
Աշոտն ու Սառան:

## Նվարդիկը

ԿԱՐԵՆ Ա ՍԻՄՈՆՅԱՆ

Հենց որ սովորեցի սուլել Ազնաուրի նոր երգը, շտապեցի բակ, որ մի քիչ զարմացնեմ մարդկանց: Ես արտակարգ լսողություն ունեմ և հրաշալի էլ սուլում եմ: Իսկ մարդկանց մնում է միայն լսել ու զարմանալ:

Մեր բակը շատ մեծ է: Չորս կողմից հսկա պարիսպների պես կանգնած են շենքերը, որոնք արտաքինից շատ գեղեցիկ են, իսկ եթե մեր բակից նայեք... Պատշգամբներից շատերը փակված են ապակեպատով, շատերը բաց են և այնտեղ կախված կտեսնեք խայտաբղետ զգեստներ: Հետաքրքիր է: Բայց, իհարկե, հաճելի է մեր բակը, որովհետև ծառերը շատ են, ավազան էլ կա, որը հազվադեպ է ջուր ունենում, և նույնիսկ փայտե նստարաններ էլ ունենք, որոնք ներկված են տարբեր գույների, ինչպես քաղաքի բոլոր պուրակներում և, ինչ խոսք, բավականին հաճելի են: Այդ նստարանները չեն սիրում միայն մի քանի թոշակառու ծերունիներ, որոնք առավոտից մինչև ուշ գիշեր բակում նարդի են խաղում: Բայց ես նրանց չեմ մեղադրում: Չեն սիրում, թող չսիրեն:

Եվ մեր այս մեծ ու հետաքրքիր բակում հակառակի պես առաջինը հանդիպեցի Նվարդին: Ես, իհարկե, չհամարձակվեցի սուլել նրա համար, քանի որ, միևնույն է՝ չէր զարմանալու, և ավելին, ծաղրելու էր. մեր նաշակների մեջ նկատելի տարբերություն կա: Ինձ տեսավ թե չէ՝ կանգնեց, մի քանի անգամ ծեռքի վրա փաթաթեց կաշեփոկը, որի մյուս ծայրին ամրացված էր մի շնիկ: Շնիկը, իհարկե, իսկական էր, կենդանի:

— Այ թե քննոտ շուն եմ ասե՜լ,— նկատեցի ես ու արհամարհանքով զննեցի շանը:— Ի՜նչ էլ հիմար դունչ ունի:

Նվարդը բաց թողեց կաշեփոկը և խիստ տոնով ասաց.

— Ջե՛կ, հասի՛ր:

— Դե՛, դե՛, դե՛,— գոչեցի ես:— Ի՞նչ անլուրջ բաներ ես անում: Հեռու՛ պահիր դրան:— Մի քանի քայլ ետ ցատկեցի:— Մի կարծիք հայտնեցի՝ կըրա՞կն ընկա:

— Ջե՛կ,— նորից գոչեց Նվարդը, և շնիկն անմիջապես մոտեցավ նրան ու շարժեց պոչը:

— Լա՞վ շուն է,— հարցրեց Նվարդը:

— Հրաշալի՜ շուն է,— ասացի ես:— Այդպիսի շներ հազվադեպ են պատահում:

— Ես նրան վարժեցնում եմ,— բացատրեց Նը-

վարդը։ — Ուզո՞ւմ ես, մի որևէ բան նետեմ, անմիջապես կվազի կբերի։

Երբ Նվարդը այսպես մարդավարի էր սկսում խոսել ինձ հետ, անմիջապես փափկում էի և մտածում, որ երբ հնարավոր է աշխարհում հաշտ ու համերաշխ ապրել, ապա էլ ինչո՞ւ եմ իզուր վեճ ու կռիվ սարքում աղջիկների հետ։ Եվ այն էլ հատկապես Նվարդի հետ, որին, իմ կարծիքով, շատ եմ հավանում և շատ կուզեի, որ նա միշտ ինձ հետ սիրալիր լիներ։



— Վարժեցնո՞ւմ ես, — հուզվեցի ես։ — Եվ շնիկն էլ վարժվո՞ւմ է։

— Իհարկե, շատ եմ չարչարվում, բայց կամաց-կամաց սովորում և ինչ-որ բաներ սկսում է հասկանալ։

— Հասկանում է, — նորից հուզվեցի ես։ — Իսկ երկա՞ր ժամանակ է, որ զբաղվում ես այդ սքանչելի շնիկով։

— Մեկ ամսից ավելի է։

Ես ուզում էի նորից հուզվել, բայց մտածեցի, որ, միևնույն է, Նվարդը չի հավատալու իմ անկեղծությանը, և հարցրեցի.

— Իսկ ինչո՞ւ չեմ նկատել։

— Առաջին օրն է, որ դուրս եմ բերել զբոսանքի։

— Խե՛ղճ շնիկ, — գոչեցի ես։ — Ուրեմն մեկ ամբողջ ամիս տանը փակված է եղել։

— Իհա՛րկե։ Խելացի շունը նախ պետք է տիրոջը լավ ճանաչի և հետո միայն նկատի շրջապատը։

Հանկարծ հիշեցի, թե ինչպես իմ գիտնական, և բավականին լուրջ գիտնական, մեծ եղբայրը վերջերս իրեն բոլորովին կորցրել էր և զանազան սպիտակ մկներ ու սև կատուներ էր վարժեցնում։ Ես սկզբում նույնիսկ կարծում էի, թե եղբայրս որոշել է գիտությունը թողնել ու դառնալ կրկեսի դերասան։ Եվ այնքան էի ուրախացել, որ ամեն օր առանց տոմսի կրկես կգնամ ու կդիտեմ եղբորս ցուցադրած հետաքրքիր համարները։ Բայց, իհարկե, շատ շուտով եղբայրս հիասթափեցրեց ինձ, և ես նրանից հույսս կտրեցի։ Իհարկե, երբեք չէի հետաքրքրվել, թե նա ինչու է վարժեցնում, բայց թե ինչպե՞ս էր վարժեցնում... Մի քանի անգամ թաքուն հետևել էի նրան այդ տարօրինակ զբաղմունքի ժամանակ, և հանկարծ հիշեցի, թե նա ինչպես էր վարժեցնում։

— Նվա՛րդ, — ոգևորված գոչեցի ես։

— Ի՞նչ պատահեց, — այնպես սառը ասաց նա, որ իմ ոգևորությունը անմիջապես պաղեց։

— Ուզում եմ ասել՝ երևի դժվար է վարժեցնելը։ Այո՞։

— Ինչո՞ւ է դժվար։ Մեկ ամսվա ընթացքում իմ Ջեկն արդեն գիտե տիրոջը նեղացնողների վրա հարձակվել և անմիջապես ետ բերել հեռու նետած իրը։ Քի՞չ է։

— Քի՛չ է, — ասացի։ — Իհարկե, քիչ է։ Այսպիսի հրաշալի շան համար նույնիսկ շատ քիչ է։

— Խոսում ես, է՛լի, — բարկացավ Նվարդը։ — Իսկ կարո՞ղ ես թեկուզ երկու ամսում այդքան բան սովորեցնել մի որևէ պատահական շնիկի։ Ջե՛ս կարող։ Բայց պարծենում ես։ Բոլոր տղաներն էլ պարծենկոտներ են։ Իսկ ձեռքներից բան չի գալիս։

Համբերությամբ լսեցի նրա կարծիքը տղաների մասին, ապա ասացի.

— Ուզո՞ւմ ես գրազ գանք։ Երկու օրվա մեջ այդ շանը այնքա՜ն բան սովորեցնեմ։

— Գնանք, Ջե՛կ, — ասաց Նվարդը։ — Ես պարծենկոտներին տանել չեմ կարողանում։

Շունը պոչը շարժեց, ծամածռեց իր հիմար դունչը և փորձեց հաչել։ Բայց միայն կարողացավ ծղրտալ։ Դա ի՛նչ շուն էր, որ հաչել էլ կարողանար։

— Գրազ գանք։ Ջեկին տուր ինձ և կհամոզվես։

— Ցտեսությո՜ւն, — ասաց Նվարդը։ — Երեկոյան նորից բակ եմ իջնելու, կհանդիպենք։

Բարկությունից լացս եկավ: Ի՞նչ տարօրինակ մարդիկ կան: Բան ես ասում՝ չեն ուզում հասկանալ:

— Կատակ չեմ անում, — արդեն հուսահատված ասացի ես: — Ազնիվ խոսք, կատակ չեմ անում: Ա՛յ, փորձիր:

Նվարդը ծիծաղեց, հետո կաշեփոկը մեկնեց ինձ ու ասաց.

— Որ բան դուրս չի եկե՜լ...

— Կտեսնենք, — ասացի ես ու շնիկին քարշ տըվեցի հինգերորդ հարկ:

Հյուրասենյակում ազատ տարածություն շատ կար: Այդ պատճառով էլ որոշեցի, որ ավելի լավ տեղ չեմ գտնի և անցա շնիկին վարժեցնելու ծանր աշխատանքին:

— Նստի՛ր ու նայի՛ր ինձ, — հրամայեցի ես շընիկին:

Ջեկը նստեց:

— Չշարժվե՛ս:

Ջեկը շարժեց միայն պոչը:

Ես կանգնեցի ձեռքերիս վրա և գլխիվայր սկսեցի քայլել: Հետո կանգնեցի ոտքերիս վրա ու հարցրեցի.

— Տեսա՞ր:

Ջեկը նորից շարժեց իր ցանցառ պոչը:

— Եղբորս մեթոդն է, — ասացի: — Փորձված մեթոդ է:

Հետո նորից կանգնեցի ձեռքերիս վրա: Բայց հազիվ էի այդ վիճակում մի երկու քայլ արել, երբ իր հիմար հաչոցով Ջեկը վրա պրծավ ինձ ու փորձեց ատամների տակ առնել թևս:

Երևի այդ տխմար հաչոցի ու մեկ էլ իմ վայնասունի վրա դուռը բացվեց. ներս ընկավ եղբայրս:

— Ի՞նչ է պատահել, — հարցրեց նա:

— Ոչինչ, — հանգիստ պատասխանեցի ես: — Քո մեթոդը կիրառում եմ այս շնիկին մի քիչ բան սովորեցնելու համար:

Եղբայրս ծիծաղեց: Ծիծաղեց, առանց ուշադրություն դարձնելու իմ ինքնասիրության վրա:

— Խելո՜ք, գոնե հարցրու:

Հետո իր առանձնասենյակից մի տարօրինակ գլխարկ բերեց ու դրեց գլխիս:

— Այ, հիմա արդեն ամեն բան տեղին է: Մըտքովդ ինչ անցնի՝ արա: Հետո կսովորեցնենք շանը:

— Չհասկացա:

— Խելո՜ք, — կրկնեց եղբայրս: Նա շատ էր սիրում այդ բառը տեղի-անտեղի կրկնել: Գիտնականի տարօրինակություն է. ի՞նչ կարող ես անել: — Խելո՜ք: Երբ դու որևէ բան ես անում, նախ մտածում ես: Իսկ երբ մտածում ես, քո ուղեղում առաջանում են էլեկտրական հոսանքներ: Հասկացա՞ր:

— Հասկացա:

— Այդ գլխարկում հատուկ սարքեր կան, որոնք



Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

ընդունում են ուղեղի հոսանքները և պահում իրենց մեջ: Հաս...

— Հասկացա՛, հասկացա՛:

Դա էլ է գիտնականի տարօրինակություն: Հենց սկսում է որևէ բան բացատրել, մի հազար անգամ կկրկնի՝ հասկացա՞ր:

— Ուրեմն, այդ հոսանքները եթե մի քանի անգամ հաղորդենք Ջեկի ուղեղին, նա նույն բաները կսովորի անել առանց որևէ դժվարության: Հասկացա՞ր:

Ջեկին փակեցի լողարանում, իսկ ես գլխիս դրած տարօրինակ գլխարկով սկսեցի ամեն տեսակի հիմարություններ անել: Քայլեցի ձեռքերիս վրա, սողացի, բաժակով ջուր խմեցի, հետո ջուրը կլկլացրի կոկորդում: Նստեցի դաշնամուրի առաջ ու նվագեցի: Հայելու առաջ կանգնած՝ երևի մի հազար անգամ լեզուս հանեցի, աչքերս պլշեցի... և այլ բազմաթիվ ծամածռություններ, որոնք պատմելով չես պատկերացնի: Պետք է ինքդ տեսնես:

Այս ամենի ընթացքում մտածում էի միայն, որ երբ շունը վերադարձնեմ Նվարդին և նա համոզվի, որ երկու օրվա մեջ իր Ջեկը խելքի է եկել, անպայման կզղջա ինձ կոպտելու համար: Իսկ ես կփորձեմ ներել նրա այդ կոպտություններն և կհամբուրեմ նրա ճակատը, ճիշտ այնպես,

ինչպես մայրիկս է ամեն անգամ ինձ որևէ հանցանք ներելիս՝ համբուրում:

Ես մոտ երկու ժամ երևի տանջվեցի: Հետո մտածեցի, որ այդքանն էլ շատ է մի այնպիսի քծնոտ շան համար, ինչպիսին Ջեկն է, ու գըլխարկը տվեցի եղբորս, որպեսզի այնտեղ պահված հոսանքները հաղորդի շանը:

Մի խոսքով, հաջորդ օրը, կաշեփոկը ձեռքիս փաթաթած, հպարտ-հպարտ բակ իջա: Այս անգամ էլ հակառակի պես շատ ուշ գտա Նվարդին:

— Արդեն ձանձրացա՞ր,— ծիծաղելով գոչեց նա, հենց որ հանդիպեցինք:

— Այսպիսի քծնոտ շներին այնքան հեշտ է վարժեցնելը, որ ոչ մի ձանձրույթ էլ չզգացի,— ասացի ես:

— Ջե՛կ,— գոչեց Նվարդը:

— Շունդ բավականին բութ է: Մի բան ասում ես թե չէ, առանց իրեն հաշիվ տալու՝ կատարում է:

— Դու... գիտե՞ս... բավական է վիրավորես,— բարկացավ Նվարդը:

—Այ, օրինակ, ես ասում եմ՝ Ջեկ, քայլիր առջևի թաթերիդ վրա, և նա առանց մտածելու, որ դա հիմարություն է... տե՛ս, տե՛ս...

Նվարդը երևի ուզեց զարմանքից ճչալ, բայց չհասցրեց: Ջեկն իր առջևի թաթերի վրա սկսեց քայլել: Հետո նստեց հետևի թաթերին, հանեց լեզուն, աչքերը պլշեց, հետո սկսեց սողալ...

Նվարդը բռնեց ուսերս և թափահարեց:

— Այդ բոլորը դու՞ ես սովորեցրել: Ազնիվ խո՞սք... Չէ, ասա՛, ազնիվ խո՞սք... Ինչպե՞ս ես սովորեցրել:

— Շատ հասարակ,— պատասխանեցի ես անփութորեն և սկսեցի բացատրել, որ դա դատարկ բան է և որ դրա համար անհրաժեշտ են ամենասովորական ապարատներ:

— Հետաքրքիր է,— հիացավ Նվարդը:— Ուրեմն, ինչ էլ մտածես, կարող ես թելադրել շանը և նա... վա՛յ, վա՜յ...

Այդ անիծյալ Ջեկն էր, որ ձգվելով փորձեց համբուրել Նվարդի ճակատը:

Ես շփոթվեցի:

Իսկ Նվարդը մի կողմ հրեց Ջեկին և դառնալով ինձ՝ ծամածռեց դեմքը:

— Զզվելի՛,— ասաց ու հեռացավ:

Ու մենք մինչև հիմա էլ չենք խոսում իրար հետ: Ինձ թվում է, որ եթե Նվարդը գոնե մի անգամ նայի իմ կողմը, երբ մենք բակում հանդիպում ենք իրար, ապա ես անմիջապես կփափկեմ ու նորից կհամոզվեմ, որ աշխարհում կարելի է հաշտ ու համերաշխ ապրել և այլևս երբեք չնեղացնել աղջիկներին:

Իսկ որ Ջեկը քծնոտ ու անպետ՞ք շուն է, կասկած չունեմ:

# Գնել մի բարեկամ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Մայթերից բարձրանում էր գոլորշի: Արևը տաքացնում էր տղայի դեմքը: Մի ժամից ավելի էր, ինչ տղան և իր երկու ընկերները՝ Արամն ու Կարենը դուրս էին եկել դպրոցից: Զբոսայգու մոտ երեքն էլ կանգ առան:

—Կա՛ր, քեզ մոտ ուրիշ ի՞նչ կա,—ասաց Արամը,— ես կարող եմ գնել, այսինքն փոխարենը քեզ փող տալ, և դու կշարունակես:

Կարենը կարծես ցանկացավ ձեռքը տանել դեպի թևի տակ սեղմած պայուսակը:

— Լա՛վ մտածիր,— ասաց Արամը: Նա բռան մեջ Կարենի ականջին մոտիկ գրնգացրեց մետաղադրամները.— Լավ գին կտամ, եթե որևէ պետքական բան ունես...

Անցան ձյունից նոր ազատված դեռ ցեխոտ ծառուղով, և տղան զարմանում էր, թե ինչպես այդ Արամն կարողանում էր կոշիկները դնել հենց ցեխաջրերի մեջ և չաղտոտալ:

— Լա՛վ մտածիր,— ասաց Արամը:

Կարենը մտածում էր. նկատելի էր, որ նա ուներ էլի ինչ-որ բան, որը կարելի էր փոխանակել:

— Ինձ համար միևնույն է,— ասաց Արամը,— ես տարել եմ, դու տանուլ ես տվել, այնպես որ կարող եմ հանգիստ հեռանալ. ես քո մասին եմ մտածում. եթե մի հիսուն կոպեկ ունենաս, հնարավոր է փողերդ ետ բերես:

Տղայի մոտ կար քսանչորս կոպեկ: Հիմա նրան թվաց, թե Կարենը գիտի իր մոտ եղած այդ քսանչորս կոպեկի մասին:

— Կա՛ր,— ասաց տղան,— եթե չմերժես, ես կարող եմ...

Արամը հանկարծ նայեց սաստող ու զսպող հայացքով և ասաց.

— Սպասի՛ր. այսպիսի դեպքերում, օրենքը գիտես, ուրիշների գործերին չեն խառնվում, և ամեն մեկը իր համար է պատասխանատու։

Տղային թվաց, թե կա մի ինչ-որ դեպք, երբ ընկերոջն օգնելը վատ է։

— Լա՛վ,— ասաց Արամը,— ես քեզ համար էի մտածում. ասում եմ, ընկեր ես, մեղք ես։ Բայց որ չես ուզում, ի՞նչ արած, կարող եմ գնալ և իրավունք էլ ունեմ. ես քո ասածով չե՞մ ապրել։— Եվ մեջքը դարձրեց Կարենին.— Գնացինք,— ասաց նա տղային,— միևնույն է, նա իր լավն ու վատը չի հասկանում։

Քայլեցին փողոցի կողմը, և տղան համոզված էր, որ այսօր ամեն ինչ վերջացած է. հիմա իրենք երեքով կելնեն զբոսայգուց, փողոցով միասին կանցնեն էլի ինչ-որ կարճ տարածություն և կբաժանվեն. իրենցից նախ կբաժանվի Կարենը, իսկ ինքն ու Արամը կքայլեն մինչև մոտակա կինոթատրոնի շենքը։ Արդեն հինգերորդ տարին է, ինչ իրենք

— Հը՞,— ասաց Արամը։— Տե՛ս, տե՛ս, մտածելու ժամանակ կա. ես գիտեի, որ դու դեռ կարող ես շարունակել, տե՛ս, ես կարող եմ ամեն ինչ վերցնել թեկուզ՝ դրոշմանիշերիդ տետրը, չնայած ինձ պետք չէ։

Նրանք մոտենում էին զբոսայգու սահմանին։ Կարենը կանգ առավ, պայուսակը դրեց բարձրացրած ծնկին, բաց արեց, միջից հանեց դրոշմանիշերի տետրը։ Տղան գիտեր, թե յուրաքանչյուր նոր ձեռք բերած դրոշմանիշի համար նա որքան էր ոգևորվում։

— Հիսուն կոպեկ կտամ, կուզես՝ հիսունհինգ,— ասաց Արամը,— բայց վաթսուն չեմ տա, սկզբից ասում եմ, դո՛ւ գիտես, գնացինք,— ասաց նա տղային։

— Սպասի՛ր,— ասաց Կարենը. նա չթերթեց տետրը։ Տղան նրան միշտ հիշում էր այդ տետրը թերթելիս։ Այս անգամ նա չթերթեց, կարծես ցանկանում էր տեսնել միայն այդ Արամի դեմքը.—Վերցրո՛ւ։

Արամը տետրը խցկեց իր պայուսակի մեջ և



դպրոցից միշտ միասին են գնում տուն, ինքը Կարենը և այդ Արամը. Կարենը այս տարի ուրիշ դասարանում է սովորում, բայց իրենք առաջվա պես դասերից հետո միասին են գնում տուն։

— Կա՛ր,— ասաց տղան,—վաղը կսպասե՞ս։

— Կսպասեմ,— ասաց Կարենը։

Տղան ձայնից հասկացավ, որ նա շատ տրտմած է։

— Սպասի՛ր,– ասաց Կարենը։

Եվ տղան զգաց, որ նա ավելի ոչինչ չի կարող ասել և որ պետք է առանց ասելու՝ նրան հասկանալ։

սկսեց դրամները մեկ-մեկ հաշվելով դնել Կարենի պարզած ափի մեջ։

— Դու հետո իմ դրոշմանիշերի տետրը կծախե՞ս ինձ, հը՞,— հարցրեց Կարենը,— ես հինգ կոպեկ էլ ավել կտամ, ի՞նչ անենք, հինգ կոպեկ։

— Կծախեմ,— ասաց Արամը,— իմ ինչի՞ն են պետք։

Նրանք երեքով էլ ետ գնացին այգու խորքը և մոտեցան նստարաններին։ Կարենը Արամից նախ տարավ հինգ կոպեկ, հետո՝ էլի հինգ։ Բայց տղան չէր հավատում, թե նա այդ Արամից ետ կտանի

իր բոլոր փաթաուն կոպեկը։ Նա գիտեր, որ Կարենը եա չէր հավատում և անվստահ էր։

— Ա՛յ, տեսա՞ր, դու արդեն սկսում ես տանել: Այս խաղը այսպես է, մեկ կտարվես, մեկ էլ տեսար,— ասաց Արան,— կտանես։ Իսկ երբ սկսեցիր տանել, նշանակում է, խաղը քո կողմն է շուռ եկել, հասկանո՞ւմ ես, մկնի՛կ...

Նա, այդ Արան, երբ ուրախ էր տրամադրված լինում, բոլորին ասում էր՝ մկնիկ։

Տղային ջղայնացնում, անհամբեր էր դարձնում անվստահության զգացումը, նրան թվում էր, թե, միևնույն է, ի վերջո անպայման այդ Արան կտանի։ Նա ցանկանում էր, որ տաներ Կարենը, որովհետև շահել էր Արան, կցանկանար, որ տաներ այդ Արան, եթե շահած լիներ Կարենը։ Նա չէր ուզում, որ որևէ մեկը տանուլ տված լիներ. և որպեսզի այս ամենը շուտով վերջանար, ասաց Կարենին.

— Շո՛ւտ արա. կա՛մ այս կողմ, կա՛մ այն։

— Դե՛, ի՞նչ որ կա,— համարյա բղավեց Կարենը և, ձեռքը ցնցելով, ափը բաց արեց։

Քրտնած ափի մեջ տղան հաշվեց մի քանի տասակոպեկանոց և էլի ուրիշ գռոշներ։ Արան դրամի վրայից բթամատը դանդաղ ետ սահեցրեց.

— Ձեղավ, բախտ չունես, տեսա՞ր, չեղավ,— ասաց Արան։— Ես համոզված էի, որ դու կտանես, բայց որ բախտ չունես, ի՞նչ արած։

Տղան մտածում էր, ահա հիմա իրենք կանցնեն փողոցը, կանցնեն էլի ինչ-որ տարածություն, և Կարենը կբաժանվի իրենցից. և հետո ինքը կասեր այդ Արային, կհասկացներ, որ նա լավ չարեց, և որ նա չնկատեց, թե որքան էր տրտմել Կարենը, չէ՞ որ նա իրենց ընկերն է, ամեն օր լինում են միասին, ամենուր գնում են միասին, կասեր, որ Արան ընկերաբար չվարվեց։ Սակայն չէր ուզում ասել. նա ուզում էր, որ Արան ինքը հասկանար այդքանը։

— Ես գնացի,— «Քնար» սրճարանի մոտ ասաց Կարենը։

Սակայն չգնաց և դեռ էլի քայլեց իրենց հետ։

— Գնացի՛,— կրկնեց նա քիչ անց։

— Կարե՛ն,— ասաց տղան,— կսպասե՞ս։

Կարենը դրականորեն շարժեց գլուխը։

— Մորդ կասես, թե փողերը կորցրե՞լ ես։

Կարենը նորից շարժեց գլուխը։

— Դե՛,— ասաց Արան,— Կարե՛ն, ողջո՛ւյն։ Վաղը նորից կհանդիպենք։

Հետո նա ասաց տղային.

— Դու ուզում էիր քո քանչորս կոպեկը նրան տալ. կարծում ես, ես չհասկացա՞։ Նա ամեն օր հանգիստ խժռում է կաթ ու կարկանդակ, իսկ դու քաղցած ես մնացել՝ նրա՞ն տաս։ Կուզե՞ս, արի խաղանք։

— Ո՛չ,— ասաց տղան,— դու կարողանում ես այդ Կարենին համոզել։




— Դու ուժեղ տղա ես,— ասաց Արան,— բայց խորամանկ չես և ձեռքիցդ ոչինչ չի գալիս։ Մի քիչ խորամանկ լինեիր՝ քեզ նման ընկեր չէր ճարվի։ Իսկ կռահեցի՞ր, թե ես նրանից ինչպես եմ գլլում, հը՞, չգիտես։

— Ինչպե՞ս,— հարցրեց տղան։

Այդ Արայի մոտ նա իրեն իսկապես, զգում էր անշնորհք և անհամարձակ. նրանից միշտ սպասում էր ինչ-որ արտակարգ, անսովոր բան։ Նա հաճախ ցանկանում էր նմանվել Արային։ Բայց ամեն անգամ մի ինչ-որ բան խանգարում էր։

— Մի փոքր կտոր պլաստիլին,— ասաց Արան,— կպցնում եմ ահա այստեղ, դրամի մի երեսին ու, մատիս տակ շոշափելով, զգում եմ, թե որ կողմն եմ պահել: Դու այսպիսի բաներ չես կարող, պարզ է, ընդունակություն չունես...

Կարենը չխաբեց։ Հետևյալ օրը դասերից հետո նա սպասում էր տղային։ Նրանք հասան զբոսայգուն, և տղան ասաց.

— Արի խաղանք։

Զբոսայգին շղարշված էր թանձր մշուշով. հեռվում,խոնավ մայթերով անցնում էին անձրևանոցներով փաթաթված մարդիկ։ Նրանց ոտնաձայները չէին հասնում տղային, և նրանք թվում էին դոնդողային, սպունգի պես փափուկ։ Տղան չէր հասկանում, թե ինչու խոնավությամբ ներծծված շրջապատի մեջ զգում էր սրտաճմլիկ մի թախիծ ու մենակություն։ Նա տարավ Կարենի բոլոր փողերը, բոլոր փաթաուն կոպեկը, որով Կարենը տուն գնալիս պիտի երկու հաց գներ։

— Հետո՞, Կա՛ր.— հարցրեց տղան, երբ նրանք արդեն մայթի վրա էին։

(Շարունակությունը 28-րդ էջում)

# ՌԱՖԱԵԼ 1483-1520



## ԱՄԵՆԱԿԱՊՈՒՅՏ ԿԱՊՈՒՅՏԸ

*ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ*

Պերուջինոյին այդ օրը Ռաֆայելը թվում էր տարօրինակ. ամեն ինչին նայում էր չտեսնող, չնկատող հայացքով։ Ուսուցիչը չէր կարողանում հասկանալ, թե ինչից է դժգոհ իր աշակերտը։ Ինքը՝ վարպետը, գոհ է նրա վրձնած աստվածամոր պատկերից։ Աստվածամայրը ամբողջովին թրթռում է լույսի ու օդի առատությունից։ Գույները մեղմորեն հանգչում են կողք-կողքի, և ամբողջ կտավը ողողված է մի նուրբ ներդաշնակությամբ։ Բայց Ռաֆայելը անտարբեր նստել է փոքրիկ աթոռակին, աստվածամոր պատկերի մոտ ու մտածում է։

Երիտասարդ նկարիչը երբեմն-երբեմն բարձրացնում է գլուխը, բայց նրա հայացքը ոչ մի առարկայի վրա չի կանգնում։

— Սանցի՛ո, Սանցի՛,— մեղմ ձայն տվեց նրան Պերուջինոն։

Ռաֆայելը նայեց վարպետին։

— Հավանում եմ, շատ եմ հավանում,— ասաց նա աշակերտին,— դու կարողացել ես ամեն գույն օժտել իր լույսով։ Քո աստվածամայրը գեղեցիկ է, ինչպես կարող է գեղեցիկ լինել միայն աստվածայինը...— Պերուջինոն մի պահ լռեց, ապա ավելացրեց.— Իսկ դու տխուր ես ու մտահոգ։ Ինչ-որ բան ես որոնում...

Ռաֆայելը վեր կացավ ու այդ առավոտ առաջին անգամ նայեց իր ստեղծագործությանը։

— Գեղեցիկ է,— ասես ինքն իրեն խոսեց նա,— բայց ամենագեղեցիկը չէ։ Գեղեցիկ է,— կրկնեց նա համառորեն,— բայց ամենագեղեցիկը չէ։ Ես ուզում եմ ամենագեղեցիկը։

Պերուջինոն մոտեցավ, ձեռքը դրեց աշակերտի ուսին։

— Լավ է,— ասաց նա,— որ գեղեցիկը որոնելիս մարդ չի գոհանում գտածով, բայց քո աստվածամայրը իրավ որ գեղեցիկ է։

Բարեկամ, նուրբ դեմքով պատանին աղեղնաձև հոնքերի տակից ժպտաց սիրելի վարպետին։ «Դու ինձ չես հասկանում, սիրելի վարպետ»— մտածեց նա, բայց մտքինը բարձրաձայն չասաց։

— Խոսի՛ր, Սանցի՛ո,— խրախուսեց նրան վարպետը։

— Ես էլ եմ հավանում, վարպետ,— ասաց Ռաֆայելը,— բայց էլի ինչ-որ մի բան կա, որը փնտրում էի այս աստվածամորը շունչ տալիս ու այդպես էլ չգտա։ Իսկ հիմա ինձ թվում է, թե աստվածամայրը կիսատ է։ Կիսատ է, որովհետև չեմ գտել...

— Իսկ ի՞նչը չես գտել, սիրելի՛ս։

— Չգիտեմ,— պատասխանեց պատանին, ու նրա աչքերում թախիծը լճացավ, մուգացավ։

— Այս կապույտը, այս կապույտը,— շարունակեց Պերուջինոն,— որ դու կարողացար գտնել, դու կարողացար նրանով լույս տալ այս սքանչելագույն գեղեցկությանը, տե՛ս, նա որքան թեթև է շնչում...

— Կապու՞յտը,— վարպետին ընդհատեց պատանին,— ասացիր կապու՞յտը։

— Այո՛, կապույտը, իսկ մի՞թե այն չի գոհացնում քեզ։

— Չի գոհացնում,— այս անգամ համարձակվեց Ռաֆայելը, ու միանգամից մի ուրախ ժպիտ զարդարեց նրա դեմքը։— Ես գտա, թե ինչը չի գոհացնում ինձ, վարպետ, գտա, ես հետո քեզ կպատմեմ այդ մասին, կասեմ, թե ինչ գտա... Իսկ հիմա, հիմա թող որ դուրս գամ, մի փոքր քայլեմ իմ մեջ ծագած այդ հայտնության հետ...

Պերուջինոն շոյեց պատանու ուսը։



ՌԱՖԱՅԵԼ — Պատանու դիմանկար

— Գնա՛, բարեկամս։

Օդը ջինջ էր, երկնքում ոչ մի կտոր ամպի քուլա չկար։ Հայացքը հորիզոնին՝ Ռաֆայելը քայլում էր մտքերի մեջ թաղված։ «Կապու՜յտը, կապու՜յտը»— մեքենաբար կրկնում էր նա մտքում։

Կապու՜յտը...

Մի մեղմ ծիծաղ նրան սթափեցրեց մտքերից։ Նայեց ձայնի կողմը։

Ճանապարհից քիչ այն կողմ կիտրոնի վտիտ ծառը գրկած, գլուխը մի կողմ թեքած, չարաճճի ծիծաղում էր ինքը՝ աստվածամայրը։ Ծիծաղում էր, առանց անցնող պատանու կողմը նայելու, ծիծաղում էր իբր թե հենց այնպես, ինքն իր համար,

Ռաֆայելը մեխվեց տեղում ու նայեց աղջկան։ Ահա որքան ամիսներ է, ինչ այս հասարակ աղջիկը երիտասարդ նկարչի ցնորքներում աստվածամայր է եղել։ Հետո ցնորքներից իջել է կտավին ու, լուսե մանկանը գրկած, կյանք առել կտավի վրա։ Բայց նա՝ այդ հասարակ, սովորական գեղեցկուհին չգիտե այդ մասին։ Չգիտե, որ ինքը շնչավորվել է մի այլ տեղ, աստվածամոր կերպարանքով։



Աղջիկը շփոթվեց պատանու հայացքից ու փախավ անհետացավ ծառերի հետևում։

Ռաֆայելը շարունակեց ճանապարհը։

«Կապույտը,—նորից մեքենաբար կրկնեց նա մտքում։—Կապույտը...»

Այդ կապույտն ինչո՞ւ հանգիստ չի տալիս իրեն։ Ահա դիմացը հորիզոնի ջինջ, անամպ կապույտն է, որի մեջ ասես հալվեց աստվածամոր կերպարը։

Ռաֆայելը նորից կանգ առավ։ Ասես նրա միտքը լուսավորվեց ինչ-որ մեծ հայտնությունից։

Գեղեցիկ էր իր վրձնած աստվածամայրը, ինչպես զանգակածիծաղ այդ աղջիկը։ Բայց նա գեղեցիկ էր սոսկ։ Իսկ ճշմարիտ նկարիչը մարդկանց պետք է ցույց տա... Ճշմարիտ նկարիչը ի՞նչ պետք է ցույց տա մարդկանց։

Ռաֆայելը հենց այդտեղ, ճամփեզրին, մի ծառի ստվերի տակ նստեց։

Ժամերը անցնում էին միմյանց հետևից։ Ռաֆայելը չէր նկատում այդ, նա միայն տեսնում էր։ Նա տեսնում էր, ինչպես ամեն վայրկյան փոխվում են լույսի խաղերը, փոխվում է հորիզոնի կապույտը, անցնում են մարդիկ, անցնում են գեղեցկուհիներ, ոմանք հետաքրքրական հայացք կամ մի գողունի ժպիտ էին ընծայում ներշնչված դեմքով պատանուն ու անցնում։ Գալիս էին նորերը, իսկ հորիզոնը անընդհատ փոփոխվում էր, լույսերը միշտ նոր ու նոր խաղերով էին թրթռում։ Կապույտի ամեն երանգը մի դրոշմ էր դնում նրա հոգում, ամեն անցորդ մի շեշտ էր թողնում պատանու որոնող մտքի վրա, ու ժամերը անցնում էին։

Իսկ երեկոյան, երբ արդեն լուսնի մանգաղը ընկարվեց երկնքի մուգացած ֆոնին, Ռաֆայելը վերադարձավ Պերուջինոյի մոտ։ Նրա աչքերը վառվում էին ներքին մի լույսով, դեմքը շառագունել էր խոր մի ներշնչանքից։

— Ես իմացա, թե ինչը չեմ գտել,—ասաց նա,— Չեմ գտել ամենակապույտ կապույտն ու ամենագեղեցիկ գեղեցիկը։

Պերուջինոն զարմացած նայեց պատանուն։

— Պետք է բոլոր մարդկանցից վերցնել գեղեցիկը ու նրանցից ստեղծել ամենագեղեցիկը։ Այդ կլինի ամենամարդկայինը։ Իսկ իմ աստվածամայրը գեղեցիկ է, բայց ոչ ամենագեղեցիկը։ Ես նրան տեսա, ես տեսա շատ իտալուհիների։ Ես նայում էի նրանց, ու ամեն մեկը մի շարժում ու կորություն, ամեն մեկը մի հմայք էր ինձ բերում իմ աստվածամոր համար։ Ես տեսա հորիզոնի կապույտը բոլոր ժամերին, ու նրանցից ամեն մեկը մի երանգ ավելացրեց այն երկնքին, որը պետք է շողա աստվածամոր գլխավերևը։

— Դու շարունակ որոնում ես, Սանցի՛ո,—ասաց Պերուջինոն,—որոնում ես ու դեռ շատ պետք է ապրես։ Դու ինձանից շատ ու շատ երիտասարդ ես ու դեռ շատ հայտնություններ կանես։ Իսկական գեղեցիկը,—կրկնեց նա առավոտյան ասած միտքը,— գտնում է նա, ով ձեռք բերածով չի գոհանում։

Տարիներ անցան։ Պերուջինոն տեսավ իր հանճարեղ աշակերտի մահը, բայց չնայած կարճատև կյանքին, Ռաֆայելը կարողացավ հասնել իսկական գեղեցիկին, որովհետև որոնելու ճիշտ ճանապարհի վրա էր։ Որովհետև իմացել էր, որ ամենագեղեցիկը, այդ ամենամարդկայինն է։

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

Առաջին բանը, որ այդ անծանոթ երկրում Ջելսոմինոն տեսավ, դա մի արծաթե դրամ էր, որն ընկած էր մայթի վրա, բոլորի աչքի առաջ։

«Զարմանալի է, որ մինչև հիմա այս դրամը ոչ ոք չի վերցրել,— մտածեց նա։ —Ինչ վերաբերում է ինձ, ապա ես չեմ թողնի, որ սա մնա այստեղ ընկած։ Այսօր դեռ ես բերանս բան չեմ դրել, իսկ ունեցածս փողերն էլ երեկ երեկոյան վերջացան։ Բայց նախ իմանամ, հո անցորդներից մեկն ու մեկը չի՞ կորցրել դրամը»։

Նա մոտեցավ մի խումբ մարդկանց, որոնք ինչ-որ բան էին փսփսում և նայում Ջելսոմինոյին։

— Սինյորնե՛ր, ձեզանից ո՞վ է այս դրամը կորցրել,—հարցրեց նա շշուկով, որպեսզի իր ձայնով չվախեցնի անծանոթներին։

—Կորի՛ր այստեղից,—պատասխանեցին նրան,— և ինչքան կարող ես քիչ ցույց տուր այդ փողը, քանի դեռ փորձանքի մեջ չես ընկել։

— Ներեցե՛ք ինձ, խնդրում եմ,— շփոթված շըշընջաց Ջելսոմինոն և գնաց դեպի դիմացի խանութը, որի դռան վրա կախված էր «Պարենային և այլ ապրանքներ» գայթակղիչ ցուցանակը։

Ցուցափեղկում խոզապուխտի և երշիկի փոխարեն դրված էին տետրակի կտրուկներ, ներկերի տուփեր և թանաքի շշեր։

— Այլ ապրանքները հենց սրա՞նք են, որ կան, երևի,—ասաց Ջելսոմինոն և վստահ մտավ խանութ։

— Բարի երեկո,— սիրալիր ողջունեց նրան խանութի տերը։

«Ճշմարիտ ասած, ես դեռ կեսօրվա զանգի ձայնը չեմ լսել,— մտածեց Ջելսոմինոն։ —Աոնեք, չարժե դրա վրա ուշադրություն դարձնել»։ Եվ, ինչպես միշտ, շշունջով, որն այնուամենայնիվ նորմալ ականջի համար բավական բարձր էր հընչում, նա հարցրեց.

— Կարելի՞ է մի քիչ հաց գնել, սինյոր։

— Խնդրեմ, թանկագին սինյոր, ինչքա՞ն կուզենայիք։ Մի՞ սրվակ, թե՞ երկու, կարմի՞ր, թե՞ սև։

— Միայն թե սև չլինի։ Իսկ, ի՞նչ է, դուք իրո՞ք հացը սրվակներով եք վաճառում։

Խանութի տերը բարձր ծիծաղեց.

— Իսկ ինչպե՞ս եք ուզում, որ վաճառենք։ Մի՞-թե ձեր երկրում հացը կտոր-կտոր են անում։ Տեսե՛ք, տեսե՛ք, թե ինչքան լավ է մեր հացը։ —Այս ասելով նա ցույց տվեց թարեքները, որոնց վրա տարբեր գույնի թանաքի զանազան սրվակներ էին շարված, այնպես, կարծես շարք կանգնած զինվորներ լինեին։

Ի միջի այլոց, ամբողջ խանութում ուտելիքի հետք անգամ չկար։ Նույնիսկ պանրի փշուր ու խնձորի կեղև չկար։

«Խելքը թռցրել է, երևի,— մտածեց Ջելսոմինոն,—ավելի լավ է նրան չհակաճառել»։

— Իրոք որ հացը հրաշալի է,— համաձայնեց Ջելսոմինոն՝ ցույց տալով կարմիր թանաքի սրրվակը։ Նա ուզում էր իմանալ, թե ինչ կպատասխանի խանութպանը։

— Ի՞նչ եք ասում,— գովասանքից ամբողջովին շառագունեց վերջինս։ —Այո՛, մինչև հիմա վաճառքի հանած հացերից սա ամենալավ կանաչ հացն է։

— Կանա՞չ։

— Դե, իհարկե։ Ներեցե՛ք, դուք, երևի, վատ եք տեսնում։

Ջելսոմինոն համոզված էր, որ իր առջևում կարմիր թանաքի սրվակ է, դրա համար էլ նա պատճառ էր փնտրում, որպեսզի թողնի գնա և մի ավելի խելամիտ խանութպան գտնի։ Եվ ճիշտ ժամանակին նրա գլխում մի միտք ծագեց.

— Լսեցե՛ք,— ասաց Ջելսոմինոն,— ավելի լավ կլինի, ես հետո գամ հացի, իսկ այժմ ցույց տվեք մի խանութ, որտեղ բարձր որակի թանաք են ծախում։

— Դե, իհարկե, —պատասխանեց խանութպանը՝ միշտ սիրալիր ժպիտը դեմքին։ —Նայեցե՛ք, ճիշտ դիմացը գտնվում է գրասենյակային պիտույքների ամենահայտնի խանութը քաղաքում։

Դիմացի խանութի ցուցափեղկերում դարսված էին հացի զանազան տեսակներ, տորթեր և անուշահացեր, բարձրանում էին մակարոնի և պանրի

---

Սկիզբը՝ նախորդ համարում։

բլուրներ, երշիկի և նրբերշիկի շարաններ էին կախված։

«Ես այդպես էլ կարծում էի,— որոշեց Ջելսոմինոն,— խանութպանը խելքը թռցրել է, դրա համար էլ թանաքին՝ հաց է ասում, հացին՝ թանաք։ Այս խանութում թվում է, թե ամեն ինչ կարգին կլինի»։

Նա մտավ դիմացի խանութը և կես կիլո հաց խնդրեց։

— Հա՞ց,— ծառայակամորեն հարցրեց վաճառողը։ —Գիտե՞ք ինչ, դուք սխալվել եք։ Հացը վաճառում են դիմացի խանութում։ Մենք միայն գրասենյակային պիտույքներ ենք վաճառում,— և նա հպարտորեն ցույց տվեց իր համեղ ապրանքները։

«Հիմա ես ամեն ինչ հասկանում եմ,— որոշեց Ջելսոմինոն,— այս երկրում թարսուշիտակ պիտի խոսել։ Եթե դու հացին հաց ասես, քեզ չեն հասկանա»։

— Կես կիլո թանաք տվեք ինձ,— ասաց նա վաճառողին։

Սա կես կիլո հաց կշռեց և, ինչպես որ հարկն է փաթաթելով թղթի մեջ, մեկնեց Ջելսոմինոյին։

— Ես մի քիչ էլ, ա՛յ, սրանից եմ ուզում,— ավելացրեց Ջելսոմինոն— մատով ցույց տալով պանիրը և չհամարձակվելով անունը տալ։

— Մի քիչ էլ ռետի՞ն,— հարցրեց վաճառողը,— այս րոպեին, սինյո՛ր։ —Նա մի զգալի կտոր պանիր կտրեց և կշռելով, փաթաթեց թղթի մեջ։

Ջելսոմինոն թեթևացած շունչ քաշեց և վաճառասեղանին գցեց քիչ առաջ գտած իր արծաթե դրամը։ Վաճառողը կռացավ, մի քանի րոպե դիտեց փողը, մեկ-երկու անգամ գցեց վաճառասեղանին, որպեսզի լսի, թե ինչպես է հնչում ձայնը, իսկ հետո սկսեց դրամին նայել խոշորացնող ապակիով և նույնիսկ ատամով փորձեց։ Վերջապես նա դժգոհությամբ փողը վերադարձրեց Ջելսոմինոյին և սառը ասաց.

— Երիտասարդ, դժբախտաբար ձեր դրամն իսկական է։

— Ավելի լավ,— դյուրավստահ ժպտաց Ջելսոմինոն։

— Այդ էր պակաս։ Կրկնում եմ ձեզ, որ այս դրամն իսկական է և ես վերցնել չեմ կարող։ Գնացե՛ք ձեր բանին։ Եվ, ընդհանրապես, զգո՛ն եղեք, երիտասա՛րդ, որ ես հիմա փողոց դուրս գալու և ոստիկան կանչելու ցանկություն չունեմ։ Մի՞թե դուք չգիտեք, թե ինչ է սպառնում այն մարդուն, որը իսկական փող է ասպարեզ բերում։ Բանա։

— Բայց ես...

— Ավելի լավ է, դուք ձեր ձայնը չբարձրացնեք, ես խուլ չեմ։ Գնացեք այստեղից և ապրանքն ստանալու համար եկեք միայն կեղծ դրամով։ Տեսեք, ես նույնիսկ փաթեթները չեմ բացում։ Թող-



նում եմ այսպես, մինչև ձեր գալը։ Բարի գիշեր։

Ջելսոմինոն բռունցքը մտցրեց բերանը, որպեսզի չգոռա։ Եվ մինչ նա վաճառասեղանից կհասներ դռանը, նրա և իր ձայնի միջև այսպիսի խոսակցություն տեղի ունեցավ։

ԶԱՅՆ— Ուզո՞ւմ ես, ես այնպես գոռամ, որ նրա ցուցափեղկերը հօդս թռչեն։

ՋԵԼՍՈՄԻՆՈ— Խնդրում եմ, այդպիսի բան չանես։ Չէ՞ որ ես նոր եմ ընկել այս երկիրը և առանց այն էլ իմ գործերն այստեղ թարս են գնում։

ԶԱՅՆ— Բայց ինձ պետք է լույս աշխարհ դուրս գալ, թե չէ կորած եմ։ Դու ես իմ տերը, մտածիր, թե ինչպես ավելի լավ կլինի։

ՋԵԼՍՈՄԻՆՈ— Համբերի՛ր, շուտով դուրս կգանք այս անտորմալի խանութից։ Ես չեմ ուզում նրան սնանկացնել։ Այս երկրում ինչ-որ ամեն բան տա օրինակ է։

ԶԱՅՆ— Այդ դեպքում՝ շո՛ւտ արա. ես ...

չեմ կարող։ Ծառայի՛ր։ Մի փոքր էլ որ մնա՝ ամեն բան կփչացնեմ։

Ջելսոմինոն վազելով դուրս եկավ խանութից. թեքվեց դեպի նրբանցքը և նայեց շուրջը։ Ոչ ոք չէր երևում. դրա համար էլ նա բռունցքը բերանից հանեց և հոգնած կուտակված զայրույթից ազատվելու համար բղավեց. «Աա՜ա՜»։ Լսվեց փողոցի ջարդված լապտերի զնգոցը, իսկ մի պատուհանի զոգից ծաղկամանն ընկավ ցած ու կտոր-կտոր եղավ։

Ջելսոմինոն ազատ շունչ քաշեց.

— Եթե ես երբևէ փող ունենամ, փառավոր կուղարկեմ քաղաքային վարչությանը՝ կոտրված լապտերի դիմաց, իսկ պատուհանի զոգին նոր ծաղկաման կդնեմ։ Կարծես թե ուրիշ բան չի կոտրվել, հը՞...

— Չէ՛, չի կոտրվել,— լսվեց մի բարակ ձայն, և ինչ-որ մեկը երկու անգամ կամաց հազաց։

Ջելսոմինոն փնտրեց այդ ձայնի տիրոջը և մի կատու միայն տեսավ, ավելի ճիշտ՝ մի էակ, որին կարելի էր կատվի տեղ ընդունել։ Նախ և առաջ՝ այդ կատուն կարմիր գույն ուներ։ Ինչ-որ մի առանձնահատուկ մուգ կարմիր գույն էր դա։ Կատուն ընդամենը երեք ոտք ուներ և ամենազարմանալին այն է, որ այդ կատուն նկարված կատու էր, այն կենդանիների նման, որ սովորաբար երեխաները նկարում են պատերին։

— Այդ ի՞նչ է, դու խոսող կատո՞ւ ես։

— Այո՛, խոստովանում եմ, որ ես մի փոքր անսովոր կատու եմ։ Ես, օրինակ, կարողանում եմ կարդալ ու գրել։ Բացի այդ՝ ես դպրոցական կավիճի աղջիկն եմ։

Ում աղջիկն ե՞ս...

— Ինձ մի աղջիկ դպրոցից թռցրած գունավոր կավիճով նկարել էր այս պատին։ Եվ քանի որ նկարելիս մոտեցավ ոստիկանը, նա փախավ և այդպես էլ չհասցրեց չորրորդ ոտքս նկարել։ Այ, դրա համար էլ ես կաղ դուրս եկա և որոշեցի անունս Կաղլիկ—կատու դնել։ Բացի այդ, ես մի քիչ հազում եմ։ Չէ՞ որ ձմռան ամենացուրտ ամիսները ես անցկացրեցի բավական խոնավ պատի վրա։

Ջելսոմինոն նայեց պատին, որի վրա մնացել էր Կաղլիկ—կատվի դրոշմը։

— Բայց ինչպե՞ս պոկվեցիր պատից,— հարցրեց Ջելսոմինոն։

— Դրա համար ես պետք է շնորհակալ լինեմ քո ձայնին,— պատասխանեց Կաղլիկ—կատուն։— Եթե դու մի քիչ էլ ուժեղ գոռայիր, ըստ երևույթին, պատը կծակեիր և տհաճ բան կատարվեր։ Իսկ հիմա, պարզապես, իմ բախտը բերեց։ Ի՞նչ հիանալի բան է գետնի վրա քայլելը։ Ի միջի այլոց, դու ընդամենը երկու ոտք ունես և քեզ հերիք է անում, այնպես չէ՞...

— Դե, իհարկե,— համաձայնեց Ջելսոմինոն,— ինձ համար սա նույնիսկ շատ է։ Եթե ես միայն մի ոտք ունենայի, տանից չէի հեռանա։

— Տեսնում եմ, որ դու այնքան էլ ուրախ չես,— նկատեց Կաղլիկ—կատուն։— Ի՞նչ է պատահել քեզ։

Ջելսոմինոն, այն է, ուզում էր պատմել իր չարաբաստիկ արկածների մասին, երբ փողոցում հայտնվեց մի իսկական, չորքոտանի կատու։ Բայց նա, ըստ երևույթին, խորասուզված էր իր մտքերի մեջ և նույնիսկ գլուխը շուռ չտվեց, որպեսզի նայի մեր բարեկամներին։

— Մյաո՜ւ,— ձայն տվեց Կաղլիկ—կատուն։

Կատվային լեզվով «մյաու» նշանակում է «ողջույն»։ Կատուն լանջ առավ։ Թվում էր, թե նա զարմացած է կամ ավելի շուտ՝ վիրավորված։

— Իմ անունը Կաղլիկ—կատու է, իսկ քո՞նը ինչ է,— հետաքրքրվեց մեր կատուն։

Իսկական կատուն մի պահ տատանվում էր, պատասխանի՞, թե՞ ոչ։ Հետո, մի փոքր մտածելով, տհաճությամբ ասաց.

— Իմ անունը Բարբոս է։

— Այդ ի՞նչ է ասում,— հարցրեց Ջելսոմինոն, որն իրոք ոչինչ չէր հասկանում նրանց խոսակցությունից։

— Ասում է, թե իր անունը Բարբոս է։

— Բայց չէ՞ որ դա շան անուն է։

— Իհարկե։



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Բան չեմ հասկանում,— ասաց Ջելսոմինոն,— մեկ խանութպանն էր ինձ հացի փոխարեն թանաք տալիս։ Հիմա էլ՝ այս շան անունով կատուն։

—Թանկագինս,—բացատրեց Կաղլիկ—կատուն,— այս կատուն կարծում է, թե ինքը շուն է։ Ուզո՞ւմ ես լսել։— Եվ շուռ գալով դեպի կատուն, սրտանց ողջունեց նրան.— Մյաո՜...

— Հա՛ֆ, հա՛ֆ,— կատաղած պատասխանեց







# Ա՜Խ, ԱՅՆ ԱՓՍԵԻԿՆԵՐԸ

ՀԱՆՐԻ ՋԱՐՅԱՆ

Այն ժամանակ ես բալի մուրաբա շատ էի սիրում. դա իմ թուլություններից մեկն էր: Բայց ի՞նչ օգուտ. զարմանալի բնավորություն ուներ մայրս: Հիմա էլ ունի. չկարծեք, թե փոխվել է: Նա երբեք էլ իր բնավորությունը չի փոխի. հայրս է այդպես ասում: Ես ու տատիկս էլ նույն կարծիքին ենք:

Եվ ահա, երեկոները թեյի ժամանակ կամ երբեմն նաև ճաշելուց հետո, հսկա, երկարավուն ամանը դնելով սեղանին, մայրս մեզ համար շատ փոքրիկ ափսեների մեջ մուրաբա էր լցնում: Նա ամեն տարի տեսակ-տեսակ մուրաբաներ էր եփում, իսկ ամենից շատ՝ բալի մուրաբա: Նա, իհարկե, գիտեր, որ իմ խեղճը գնում է բալի մուրաբայի համար, և իմ ափսեի մեջ ավելի շատ էր լցնում: Այսինքն չկարծեք, թե այնքա՜ն շատ, որ իմ սրտովը լիներ. պարզապես երկու-երեք հատիկ ու մի գդալ էլ հյութ: Գդալն էլ անիծյալ ափսեի նման, շատ փոքրիկ, ինչ-որ խաղալիք- գդալ: Իսկ իրեն, հորս ու տատիկի համար լցնում էր հավասար: Պետք է տեսնեիք, թե ինչքա՜ն հավասար էր բաժանում: Ես միշտ էլ զարմանում էի նրա աչքաչափի վրա: Հայրս էլ էր զարմանում, նույնիսկ ծաղրում էր նրան ու ծիծաղում: Իսկ ես, իհարկե, ոչ մի ծիծաղելու տրամադրություն էլ չէի ունենում, ընդհակառակը...

Այդպես էլ տարիներ անցան, ու ոչ մի անգամ կուշտ փորով բալի մուրաբա չկերա...

Եվ ահա, ամեն անգամ, երբ մայրս սկսում էր մուրաբա լցնել անիծյալ պստիկ ափսեիկների մեջ, ես կարգին սրտնեղում էի.

— Մի քիչ էլ լցրու...

— Հերիք է,— ասում էր նա:

Այնպե՜ս էի սրտնեղում, ասես ուտողը ես եմ, նա է որոշում, թե՝ «հերիք է»:

— Լցրու՛, թող երեխան ուտի,— միջամտում էր հայրս:

---

*կատուն։— Ամաչի՛ր, կատու ես, բայց «մյաու» ես անում։*

*—Այո՛, ես կատու եմ,— պատասխանեց Կաղլիկ—կատուն,— չնայած ընդամենը երեք ոտք ունեմ, այն էլ կարմիր կավիճով նկարված։*

*— Դու մեր ցեղը կխայտառակես։ Դու խաբեբա ես, կորի՛ր այստեղից։ Ես այլևս չեմ ուզում ոչ մի րոպե կորցնել՝ քեզ հետ խոսելով։ Ասենք, շուտով անձրև է գալու։ Գնամ տուն, հովանոցս վերցնեմ։— Եվ նա գնաց՝ մերթընդմերթ ետ դառնալով և հաչելով։*

*— Ինչ ասա՞ց,— հարցրեց Ջելսոմինոն։*

*— Ասաց, որ անձրև է գալու։*

*Ջելսոմինոն նայեց երկնքին։ Կտուրներից վեր արեգակն էր փայլում այնպես, ինչպես երբեք։ Նույնիսկ ծովային հեռադիտակով հնարավոր չէր ամպի կտոր տեսնել։*

*— Հասանք, որ այս երկրում բոլոր ամպամած օրերը նման կլինեն այսօրվան։ Ինձ թվում է, թե ես ընկել եմ մի այնպիսի աշխարհ, որ ամեն ինչ թարսուշիտակ է։*

*— Թանկագին Ջելսոմինո, դու ուղղակի ընկել ես խաբեբաների աշխարհը։ Այստեղ բոլորը օրենքով պարտավոր են ստել։ Եվ վա՜յ նրան, ով ճշմարտություն կասի։ Այդպիսիններին այնպես են տանջում, որ կաշին բերթում են պոչի հետ։*

*Եվ ահա Կաղլիկ—կատուն, որը պատի վրայի իր դիտակետից նայելով շուրջը, հասցրել էր շատ բան իմանալ, Ջելսոմինոյին մանրամասն նկարագրեց խաբեբաների աշխարհը։*

(Շարունակելի)

— Մի՛ խառնվիր կանանց գործերին,—խիստ տոնով պատասխանում էր մայրս:

Ես զգում էի, տատս էլ շատ կուզենար խառնվել, բայց սիրտ չէր անում: Իսկ ես միշտ զարմանում էի այն բանի վրա, թե ինչու էին հայրս ու տատս մորիցս վախենում և խղճում էի երկուսին էլ: Շատ էի խղճում...

Հայրս մեղավորի պես քմծիծաղ էր տալիս և իր բաժին մուրաբան լրիվ լցնում էր իմ ափսեն: Ես ամեն կերպ աշխատում էի հրաժարվել, բայց չէի կարողանում, որովհետև հայրս հավատացնում էր, թե ինքը բնավ էլ մուրաբա չի սիրում: Ես, իհարկե, նրան չէի հավատում. ինչպե՞ս կարող էր խելքը գլխին մարդը մուրաբա չսիրել՝ այն էլ բալի մուրաբա:

Պատահում էր, որ տատս էլ իր մուրաբայի կեսն ինձ էր զիջում: Այն ժամանակ ափսես լցվում էր: Բայց թե ի՞նչ... մեկ, երկու, երեք, և ափսեն արդեն դատարկ էր: Այնքա՜ն փոքրիկ ափսեներ էին դրանք, որ ուղղակի ուզում էի ջարդ ու փշուր անել:

Մեկ-մեկ էլ պատահում էր, երբ մայրս տանը չէր լինում, վերցնում էի ճաշի գդալն ու մտնում մառանը: Բաց էի անում մուրաբայի կափարիչը: Բայց թե ինչքա՞ն կարող էի ուտել: Այսինքն կարող էի մի ամբողջ աման միանգամից ուտել, բայց հետո մորս ձեռքից չէի պրծնի: Մի անգամ նա իմացել



Նկ. ՎԱԶՐԻԿ ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

էր, որ թաքուն մառանն եմ մտել և այնպես քոթակեց, որ կես շաբաթ չէի կարողանում աթոռի վրա նստել: Հետո էլ ստիպեց, որ մի ամբողջ շաբաթվա դասերս մեկ օրում սերտեմ: Դեռ այս բոլորից էլ բացի՝ երկու շաբաթով էլ զրկեց մուրաբա ուտելու հաճույքից:

Շատ մտածելուց հետո, մի օր էլ ելքը գտա: Վազեցի խոհանոց, բաց արի տատիս կարկատանների տուփը: Այնտեղից մի հին, ծակ գուլպա վերցրի, մտա սենյակս...

Ճաշից հետո մայրս սեղանին դրեց մուրաբայի հսկա ամանը: Հետո բուֆետից հանեց իր սիրած ափսեիկները և սկսեց մուրաբա բաժանել. լցնում էր հավասար-հավասար: Հայրս նորից ծաղրեց մորս ու սկսեց ծիծաղել: Տատս, ինչպես միշտ, լուռ էր: Հերթը հասավ ինձ: Ես գլուխս խոնարհել էի ներքև ու հազիվ էի զսպում ծիծաղս...

Հետո մայրս գդալը պարզեց ա... անի մեջ և... սարսափած նայում էր մուրաբայով լի գդալին:

Ես ավելի խոնարհեցի գլուխս:

— Մուկ է ընկել մուրաբայի մեջ,—վերջապես հայտարարեց մայրս:

Հայրս զզվանքով ետ հրեց իր ափսեն.

— Թափի՛ր անմիջապես...

Տատս մորս ձեռքից վերցրեց գդալը, ուշադիր տնտղեց ու ծոր տվեց.

— Իսկապես որ մուկ է. ափսո՜ս մուրաբան...

Միայն ես ոչինչ չասացի. անտարբեր տեսք էի ընդունել:

Փոքրիկ գդալից իրոք որ մի ահագին մուկ էր կախվել, բայց ոչ իսկական մուկ: Այդ մուկը ես էի սարքել հորս հին գուլպայից ու գցել մուրաբայի ամանը:

Մայրս իմ սարքած մուկն ու ափսեների մուրաբան ետ լցրեց ամանի մեջ և ասաց.

— Տար թափի՛ր:

Ինձ էլ հենց այդպիսի բան էր պետք: Վերցրի ամանն ու դուրս եկա: Մուրաբան դրի միջանցքի դռան հետևը և, մի փոքր սպասելուց հետո, ներս մտա:

— Թափեցի՞ր,—հարցրեց տատս:

— Այո՛, տատի՛կ,—անտարբեր ձայնով պատասխանեցի ես:

— Ափսո՜ս մուրաբան,—հառաչեց տատս ու գնաց խոհանոց:

Հանկարծ ճաշասենյակից լսեցի հորս ձայնը. նա բարձր-բարձր վիճում էր մորս հետ: Շատ զարմացա: Հայրս երբեք մորս հետ բարձրաձայն չէր վիճել...

Ներս մտա: Հայրս տեսավ ինձ, ընդհատեց խոսակցությունն ու ասաց.

— Դու գնա՛, դասե՛րդ պատրաստիր:

Իսկույն դուրս եկա: Ամեն ինչ լավ էր դասավորվում: Տատս էլ խոհանոցում ծակ գուլպաներ էր կարկատում:

Նորից կամացուկ բաց արի միջանցքի դուռը: Զգուշությամբ վերցրի մուրաբայի ամանը, տարա պատշգամբ ու թաքցրի այն սեղանի տակ, որի վրա մայրս տեսակ-տեսակ, պահածոներն էր դասավորել:

Մյուս օրը կիրակի էր: Որոշեցի համբերել մինչև առավոտ, որ, երբ մայրս շուկա գնա, մի կուշտ փորով մուրաբա ուտեմ:

Բալի մուրաբա...

* * *

Առավոտյան մայրս շուկա գնաց: Հայրս միացրեց հեռուստացույցը: Տատս հորս մի գուլպան էր փընտրում: Իսկ ես վերցրի կերակրի գդալն ու գնացի պատշգամբ:

Սեղանի տակից հանեցի մուրաբայի ամանը, գըդալը խոթեցի մուրաբայի մեջ. ուզում էի հորս գուլպայից սարքած մուկը նվիրել տատիս, հետո նոր միայն հանգիստ խղճով մուրաբա անուշ անել: Դուրս հանեցի մուկը և ի՜նչ... մուկը փոքրացել էր բոլորովին: Ուշադիր նայեցի՝ ոչ մի փոքրանալ, դա իսկական մուկ էր: Չհավատացի աչքերիս: Նորից ներս տարա գդալը. այս անգամ գդալից կախվել էր իմ սարքած մուկը: Պատկերացնու՞մ եք... էլի չհավատացի: Նորից նայեցի հատակին գցած մկանը: Այս անգամ արդեն լրիվ համոզվեցի, որ դա իսկական մուկ էր՝ փոքրիկ մի մուկ: Երևի նա էլ որոշել էր իր մորից թաքուն մուրաբա անուշ անել և կործանել էր իրեն:

Էլ ի՜նչ...

* * *

Դրանից հետո, երբ մայրս բալի մուրաբայի ամանը դնում էր սեղանին, ես հիշում էի այն խեղճ փոքրիկ մկնիկին ու հրաժարվում իմ մուրաբայից:

Անցան օրեր: Երբեմն հայրս հանդիմանական հայացքներ էր նետում մորս վրա: Մայրս սկսել էր անհանգստանալ, որ ես մուրաբա չէի ուտում, և ասում էր.

— Կե՛ր, ինչքան ուզում ես, կե՛ր:

Այն ժամանակ, որ ուզում էի, ասում էր՝ հերիք է: Իսկ հիմա հո չէի՞ կարող բացատրել, թե ինչու չեմ ուտում: Նայում էի սեղանին շարած փոքրիկ ափսեիկներին ու մտածում. «Թարս է, է՛լի, կյանքը...»

Մայրս, ստիպված, ինձ ուրիշ մուրաբաներ էր առաջարկում՝ վարդի, հոնի, ընկույզի: Իսկ ես միայն բալի մուրաբա էի սիրում: Ասենք, չէ, ընկույզի մուրաբա կարելի էր ուտել:

Եվ մի օր որոշեցի այլևս չմերժել մորս.

— Կուտեմ, միայն թե մեծ ափսեով...

## ԳԱՐՆԱՆ ԱՌԱՎՈՏ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Ծիտը՝ ծտին.— Ճի՛կ, ճի՛կ, ճի՛կ,
Ի՞նչ ես քնել, ա՛յ ծիտիկ.
Մաքուր օդ է, մաքուր օդ,
Գարնան պայծառ առավոտ:
Վտակն ուրախ կանչում է,
Հովիկն անուշ փչում է,
Օդանցքը բաց, թող օդ գա,
Ծառ ու ծաղկի լավ հոտ գա...
Դու էլ վեր կաց դուրս գնանք,
Մաքուր օդում թարմանանք:

## ՓՈՔՐԻԿ ԱՍՏՂԱԳՆԱՑԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Սևուկ, սիրուն Հրաչն եմ ես,
Թեկուզ պստիկ, բայց քաջն եմ ես,
Գիտեմ լողալ,
Պինգ-պոնգ խաղալ,
Նավակ վարել
Ու նկարել:
Բայց ամենից,
Ամենից լավ
Պատրաստում եմ
Հրթիռանավ:
Մեծ եմ արդեն, էլ ի՞նչ մնաց,
Պիտի դառնամ աստղագնաց,
Ու կտեսնեք, մի օր էլ ես,
Գագարինի, Տիտովի պես,
Աստղերի մեջ պիտի շրջեմ,
Բոլորից շուտ Լուսին թռչեմ:



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

## ԾԻԼԸ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Ծիլը կանչեց
Վարած հողից.
— Լո՛ւյս եմ ուզում,
Թո՛ղ ինձ, թո՛ղ ինձ...

Այդ ո՞ւմ հետ էր
Ծիլը խոսում։
Ո՞վ էր նրան
Պահում փոսում։

Ո՞վ չէր թողնում,
Որ նա աճի,
Արև տեսնի
Ու կանաչի։

Գիտե՞ք ով էր։
Մի տափակ քար։
Փոքրիկ ծիլը
Կռվեց երկար
Ու բարկացավ՝
— Թո՛ղ ինձ, թո՛ղ ինձ...—
Քարին հաղթեց,
Ելավ հողից։

## ՏԱՏԻ ԱԿՆՈՑԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Մարոն կապեց գոգնոցը,
Դրեց փայլուն ակնոցը.
Ուզեց կարել իր գուլպան,
Բայց չտեսավ ոչ մի բան։
Զարմանք պատեց Մարոյին.
— Այ քեզ կատա՛կ, այ օյի՜ն։
Այս ակնոցով իմ տատին
Փունջ էր հանում իր մատի։
Տեսնես՝ այս կարճ միջոցին
Ի՞նչ պատահեց ակնոցին։
Քանի տատիս չի եկել,
Տեղը դնեմ ակնոց, թել,
Թե չէ կգա հիմա նա
Ու ամեն ինչ կիմանա։

## ԱՅԾԸ

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

Ամեն ամառ ես ու մայրիկս գնում էինք գյուղ՝ տատիկի մոտ։ Ես գյուղ շատ եմ սիրում, այնտեղ քաղաքի պես չէ։ Այնտեղ կարելի է լճում ձուկ բռնել, անտառ գնալ պըտուղներ հավաքելու, երեկոյան դիմավորել արոտից եկող հոտին։

Տատիկը երկու այծ ուներ։ Ես և իմ քույր Հասմիկը միշտ դիմավորում էինք այծերին։ Մեր գալու առաջին օրը Հասմիկը ինձ կանչեց, որ դիմավորենք Մկկանին ու Զալիկին։ Այդպես էինք կոչում մեր այծերին։ Ամեն մեկս մի կտոր հաց վերցրինք ու վազեցինք։ Իսկ հացը այնքան համով և հոտավետ էր, որ ես չհամբերեցի ու կծեցի։

Դուրս եկանք փողոց։ Դիմացից դեպի մեզ էին վազում Մկկանն ու Զալիկը։ Մկկանը վազելով մոտեցավ Հասմիկին և սկսեց նրա ձեռքից հաց ուտել, իսկ Զալիկը հոտոտեց իմ ձեռքի հացը ու ետ դարձավ։ Ես շատ նեղացա Զալիկից. «Չես ուզում, պետք չի, Մկըկանին կտամ»։ Մկկանն էլ հոտոտեց իմ հացը ու շրջվեց մի կողմ։ Քիչ մնաց հեկեկայի։

Հասմիկը նայեց իմ ձեռքի հացին ու ասաց.

— Ինչո՞ւ կծեցիր, այծերը զզվող են, նըրանք երբեք կծած հաց չեն ուտում։

Ես կարծեցի՝ Հասմիկը ծիծաղում է ինձ վրա, բայց հետո ինքս ստուգեցի։ Եվ իրոք, այծերը երբեք կծած հաց չէին վերցնում։ Բայց չիմացա՝ բոլո՞ր այծերն են զզվող, թե՞ միայն տատիկիս այծերը։

(Սկիզբը՝ 17-րդ էջում)

— Ես մորս կասեմ...

Կարենը, ըստ երևույթին, չէր մտածել, թե ինչ պիտի ասեր մորը։ Հո չէ՞ր կարելի ամեն օր միևնույն սուտը կրկնել, և, վերջապես, հո հնարավոր չէ՞ր, որ ամեն օր նույն պատահականությունը կրկնվեր։

— Ի՞նչ կասես։

Կարենը մտահոգված էր։ Տղան չէր նայում ոտքերի տակ և ոտքերը դնում էր հենց ձյան ճլոփացող հալոցքների մեջ։ Նա ոտքերի մատներին և ծոծրակին զգում էր մրսեցնող պաղություն, որը, թվում էր, թափանցում է ամբողջ մարմնի մեջ։ Նա բարձրացրեց վերարկուի օձիքը, ծոծրակը ներս քաշեց, կծկվեց՝ ջանալով զսպել մարմնի ջղային սրթսրթոցը։

— Ի՞նչ կասես մորդ,— կրկնեց նա։

— Չգիտեմ։

— Տեսնո՞ւմ ես, Կա՛ր, ես Արայի նման չեմ,— ասաց նա,— ես մտածում եմ, թե քեզ ինչ կասի մայրդ. իսկապես որ անելանելի վիճակ է։

Եվ հանկարծ նա զգաց, որ այդ կարեկցանքի խոսքերը Կարենի համար կարող էին հնչել բոլորովին ուրիշ կերպ, այնպես ինչպես դրանք հնչում էին Արայի բերանից, նա զգաց, որ այդպես ծոծրակը բարձրացրած օձիքի մեջ քաշած, կծկված, պայուսակը թևատակին սեղմած, ձեռքերը գրպանները խրած տեսքով էլ ինքը հիմա շատ նման էր Արային։ Զգաց ու հանկարծ լռեց։

— Ես գնացի, ողջո՛ւյն,— ասաց Կարենը։

Տղան նկատեց, որ իրենք անցել էին «Քնար» սրճարանը։

— Վաղը ինձ կսպասե՞ս։

— Վա՞ղը,— կարծես զարմացած հարցրեց Կարենը։

Տղան զգաց, որ հիմա նրան իսկապես որ պիտի զարմանալի թվար, թե իր համար այլևս ինչ նշանակություն ուներ՝ վաղը նա իրեն կսպասի՞, թե՞ ոչ. ինչ-որ իրեն պետք էր այդ տղայից, արդեն իր մոտ էր, այդ վաթսուն կոպեկը։ Տղան ցանկացավ հարցնել նրան, թե ինչու է նա փող խաղում, ինչո՞ւ իր հետ խաղաց, չէ՞ որ իրենք այդպիսի ընկերներ չէին։

— Ես լավ գրչատուփ ունեմ,— ասաց Կարենը,— տեսե՞լ ես։

— Կա՛ր, բայց դու,— ասաց տղան,— արդեն տուն պիտի գնայիր։

— Մոսկովյան գրչատուփ,— ասաց Կարենը,— հայրս է բերել։

Եվ տղան զգաց, որ հիմա այդ Կարենի համար ինքը և այդ Արան իրարից ոչնչով չէին տարբերվում։

— Ճիշտ է,— ասաց նա,— Կա՛ր, ես առաջարկեցի խաղալ, չպետք է առաջարկեի, ես կարծում էի, թե չեմ կարող... դա կարևոր չէ, ես չպետք է առաջարկեի խաղալ։— Նա գրպանից հանեց դրամները, բոլորը, բռնեց ընկերոջ ձեռքը, դրամները խցկեց նրա ափի մեջ.— Չմոռանաս հաց առնել. և հետո, վաղը ինձ կսպասե՞ս դասերից հետո։

— Դու այդ Կարենից,— առավոտյան դպրոցում ասաց Արան,— երեկ ինչքա՞ն գցեցիր։

— Ա՛ռ,— ասաց տղան,— ես Կարենի բոլոր փողերը տարա, ճիշտ եմ ասում, ամբողջ վաթսուն կոպեկը և կարող էի նրա գրչատուփն էլ ձեռք գցել...

Նա զգաց, որ ինքը կարող էր անել այն ամենը, ինչի ընդունակ էր Արան, նա վստահ էր, ինքը ամեն ինչ կարող էր. բայց այդ ամենը անելուց առաջ պետք է մտածեր, որ գոնե որևէ խաչմերուկում, որևէ դռան մոտ, որևէ մեկը անկեղծորեն, մտերմաբար սպասեր իրեն։ Այդ մասին նա հարկ չհամարեց ասել այդ Արային։ Հիշեց Կարենի թաց, սև ներբանները, որ վազելով հեռացան՝ ցայտեցնելով հալած ձյունը։

— Եվ այդ բոլորը հեշտ էր, Ա՛ր,— ասաց նա։— Կարո՞ղ ես որևէ մեկին այսքան օգուտ տալ,— նա ցուցամատի ծայրը մոտեցրեց նրա աչքերին,— և ունենալ գոնե մի բարեկամ։



## ՏՐԱՄՎԱՅՈՒՄ

Մի աղջիկ բարձրանում է տրամվայ։

Անծանոթ տղան իր տեղը զիջում է նրան։ Աղջիկը նստում է։ Տղան հարցնում է.

— Դուք ինձ բա՞ն ասացիք։

— Ո՛չ,— զարմանում է աղջիկը։

— Ես կարծեցի, թե շնորհակալություն հայտնեցիք, կներեք,— պատասխանում է տղան։

ԳՐԵՏԱ ՍՏԵՓԱՆՅԱՆ

(Երևան, 56-րդ դպրոց, 7-րդ դասարանի աշակերտուհի)

# Իմ ուսուցիչը

ԱԼԱՎԻՅԱ ԲԱԲԱԵՎԱ

Դիլարան մոտեցավ դռանը, շատ չարչարվեց, որ ձեռքը հասցնի զանգին՝ չկարողացավ: Իսկ նա չէր ուզում առաջվա պես դուռը ծեծել: Նրան այնպես էր թվում, որ եթե ինքը դպրոց է գնում, ուրեմն արդեն մեծ է: Հո երեխա չէ՞, որ դուռը ծեծի: Դիլարան նորից բարձրացավ ոտների մատների վրա, դարձյալ չկարողացավ հասնել զանգին: Վերջապես նա պայուսակից հանեց մատիտը, նրա ծայրով սեղմեց զանգը և իսկույն էլ մատիտը թաքցրեց պայուսակում: Երբ մայրը դուռը բաց արեց, Դիլարան նրա վզովն ընկավ ու ասաց.

—Անա՛ ջան, տեսնո՞ւմ ես, արդեն ձեռքս հասնում է զանգին:

Մայրը շոյեց նրա մազերը:

—Իհա՛րկե, աղջի՛կս,—ասաց,—արդեն մեծացել ես, դպրոց ես գնում: Դու հո փոքր չե՞ս, որ ձեռքդ չհասնի:

Դիլարան մտավ սենյակ: Նրա փոքրիկ եղբայրը՝ Արիֆը նստել էր թախտին և դիտում էր գրքերի նկարները: Քրոջը տեսնելով, վեր կացավ տեղից: Դիլարան պայուսակը դրեց թախտի վրա: Արիֆը մոտեցավ նրան ու խնդրեց.

—Դիլա՛րա, ի՞նչ կլինի, որ մի անգամ պայուսակդ տաս խաղամ:

Դիլարան պայուսակը հեռացրեց Արիֆից, խեթ-խեթ նայեց նրան ու բարկացած ասաց.

—Պայուսակը քեզ համար խաղալիք չէ՛:

Արիֆը ձայն չհանեց: Ծնկաչոք նստեց թախտին, Դիլարայի կողքին ու ասաց.

—Դիլա՛րա, Լաթիֆան քեզ էր հարցնում: Նա ասաց, որ երբ դու դպրոցից գաս, իրեն իմաց տաս:

Դիլարան իսկույն վեր կացավ, որ գնա Լաթիֆայի մոտ: Արիֆն աչքը գցեց պայուսակին: Քույրը մոռացել էր պայուսակը, և դա շատ ուրախացրեց Արիֆին: Բայց Դիլարան հանկարծ կանգ առավ, ետ նայեց, ապա արագ վերադառնալով, վերցրեց պայուսակը և տարավ մյուս սենյակը:

Լաթիֆան հարևանի աղջիկն էր: Նա երկրորդ դասարանում էր սովորում, իսկ Դիլարան առաջին տարին էր դպրոց գնում: Անցյալ տարի Լաթիֆան դասերը սովորելուց հետո ամեն երեկո գալիս էր Դիլարայի մոտ և նրան պատմում էր դպրոցի, իրենց դասարանի, ուսուցիչների մասին: Երբեմն էլ նկարազարդ գրքեր էր բերում ու ցույց տալիս Դիլարային: Բայց թույլ չէր տալիս, որ Դիլարան թերթեր այդ գրքերը.

—Դու ձեռք մի՛ տուր,—ասում էր,—ինքս կթերթեմ: Փոքրերին չի՛ կարելի թերթել գրքերը: Դու նայիր նկարներին, իսկ ես քեզ համար կկարդամ:

Բայց այն բանի համար, որ Դիլարան ինքը կարդալ չէր կարող, հաճախ չարանում էր ու լաց լինում:

Այդ ժամանակ Դիլարան մանկապարտեզ էր գնում: Եվ երբ Լաթիֆան պատմում էր իրենց

## Արտասահմանյան հումոր

— Փոքրիկ, քո ականջները կեղտոտ են:
— Այո, բայց ուրիշ ականջներ որտեղի՞ց վերցնեմ:

---

— Գիտես, թե ինչու եմ ես քեզ «Փոքրիկ իշուկ» ասում,— հարցրեց քեռին փոքրիկ Վենցելին:
— Այո, քեռի, որովհետև ես դեռ այնքան մեծ չեմ, որքան դու:

---

— Որքա՞ն կլինի Բեռլինից մինչև Ցոսսեն,— հարցրեց Հանսը:
— Հազիվ 20 կիլոմետր:
— Իսկ Ցոսսենից մինչև Բեռլին:
— Նույնպես 20 կիլոմետր:
— Ես չեմ հասկանում, թե ինչու հունվարի մեկից մինչև ապրիլի մեկը երեք ամիս կա, իսկ ապրիլի մեկից մինչև հունվարի մեկը՝ 9 ամիս:

---

— Ո՞վ կարող է ասել, երբ է խնձոր քաղելու ամենալավ ժամանակը,— հարցրեց ուսուցիչը:
Փոքրիկ Կլաուզը պատասխանեց.
— Երբ շունը շղթայով կապած է:

ուսուցիչների մասին, Դիլարան էլ էր խոսք բաց անում իրենց մանկապարտեզի մասին: Ամեն մեկն իր ուսուցչին էր գովում և երբեմն այդ վեճի պատճառով իրարից նեղանում էին:

Մի անգամ Լաթիֆիան սովորականից շուտ եկավ Դիլարայի մոտ: Դռնից ներս մտնելուն պես ասաց.

—Իմ ուսուցիչը շքանշան ստացավ:

Դիլարան նայեց ընկերուհուն, ժպտաց և հանկարծ տխրեց, ինքն էլ չիմանալով, թե ինչու:

Տեսնելով Լաթիֆիայի ուրախությունը, Դիլարայի մայրը ձեռքը դրեց նրա ուսին ու ասաց.

—Կգա մի օր, որ դու էլ ուսուցիչ կդառնաս:

Դիլարայի ուսուցիչը շքանշան չուներ: Նա իր մտքում շատ բաներ գտավ իր ուսուցչին գովելու համար, բայց այդ բաներն այնքան էլ չէին բավարարում: Իսկ Լաթիֆիան պատմում էր, հա պատմում, թե ինչպես բոլոր աղջիկները շնորհավորել են իրենց ուսուցչին, թե ինչպես նրա նկարը տպել են բոլոր թերթերում և թե ինչպես նրան հիմա ճանաչում են բոլորը, նույնիսկ Կրեմլում:

Դիլարան լացակումած, դողդոջուն ձայնով ասաց.

—Ի՞նչ կա որ, եկող տարի էլ ես կգնամ դպրոց, և իմ ուսուցիչն էլ շքանշան կստանա:

Այդ խոսքերից Լաթիֆիան քրքջաց: Դա ավելի զայրացրեց Դիլարային և այդ դեպքից հետո աղջիկները իրար հետ չէին խոսում:

* * *

Այժմ Դիլարան արդեն դպրոցական էր: Նա էլ ուներ ընկերուհիներ և ընկերներ, դասարան, սեփական գրքեր և նույնիսկ շքանշանակիր ուսուցիչ: Արդեն երկու օր էր, որ Դիլարան դպրոց էր գնում և այդ երկու օրը չէր տեսել Լաթիֆիային: Նա հիմա անպատճառ ուզում էր տեսնել նրան, խաղալ հետը և պատմել իր ուսուցչի մասին: Հիմա զրուցելու, պատմելու շատ բան ուներ...

* * *

Աղջիկների ներս մտնելուն պես՝ Արիֆը վազելով գնաց երեսնիվայր պառկեց թախտի վրա ու, Դիլարայի գունավոր մատիտները կոխելով գրպանը, ճչաց.

—Չե՛մ տա, իմ մատիտներն են, չե՛մ տա:

Դիլարան նրան մի գիրք տվեց ու նորից վերցրեց:

Աղջիկները նստեցին թախտի վրա, սկսեցին ջերմ զրույցը: Դիլարային մի բան դուր չէր գալիս: Նրան թվում էր, թե առավելությունը ընկերուհու կողմն է: Լաթիֆիան հիմա արդեն երկու ուսուցիչ ուներ: Լինելով երկրորդ դասարանում, նա ուներ նաև ռուսաց լեզվի ուսուցիչ: Բայց Դիլարան այնքան եռանդով էր խոսում իր ուսուցչի մասին, որ Լաթիֆիան հնարավորություն չուներ մի նոր բան ասելու:

Դիլարան ու Լաթիֆիան սովորում էին միևնույն դպրոցում, միայն Դիլարան առաջին հերթի էր, իսկ Լաթիֆիան՝ երկրորդ: Զրույցի ժամանակ Լաթիֆիան կտրեց Դիլարայի խոսքն ու հարցրեց.

—Դիլա՛րա, իսկ ի՞նչ է ձեր ուսուցչի անունը:

Դիլարան կարկամեց, շիկնեց, նայեց մոր կողմը, որը սեղանն էր կարգի գցում ու կամացուկ ասաց.

—Իմ ուսուցչի անունը... Ուսուցչուհի է, էլի՛:

Լաթիֆիան ծափ տվեց ու ծիծաղեց: Իսկ մայրը նայում էր Դիլարային ու ժպտում: Դիլարան ավելի կարմրեց: Մայրը մոտեցավ նրան, շոյեց մազերն ու ասաց.

—Աղջիկս, շատ վիրավորվելը, ջղայնանալը շատ վատ բաներ են: Քո ուսուցչուհու անունը Մարիամ խանում է:

Այս անգամ էլ Լաթիֆիան կարմրեց:

—Մարիամ խանում... Մարիամ խանում...— կրկնում է ու ասում,—դա իմ ուսուցչուհին է:

Դիլարան ձեռքով խփեց թախտին:

—Ո՛չ, ո՛չ, նա ի՛մ ուսուցչուհին է,—և պաշտպանություն խնդրողի հայացքով նայեց մորը:

Մայրը նստեց աղջիկների կողքին:

—Մի՛ կռվեք, աղջիկներս,—ասաց նա.—Մարիամ խանումը ոչ միայն ձեր երկուսի ուսուցչուհին է, նա իմ ուսուցչուհին էլ է եղել: Նա շատ մայրերի, շատ աղջիկների ուսուցչուհին է եղել: Հենց դրա համար էլ նրան պարգևատրել են Լենինի շքանշանով:

Աղջիկները զարմացած լսում էին մոր խոսքերը: Իսկ Դիլարան մտածում, զղջում էր, թե ինչպես դրա համար անցած տարի նեղացավ իր ընկերուհի Լաթիֆիայից:

Ադրբեջաներենից թարգմ. ՍՈՒՐԵՆ ԱՅՎԱԶՅԱՆ





# ԸՆԿԵՐՈՋ ՓՈԽԱՐԵՆ

*ԱՐՏԱՎԱԶԴ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

Այդ կիրակի ես վաղ արթնացա և իսկույն հիշեցի ընկերներիս: Նրանք պետք է ինձ սպասեին դպրոցի բակում, հետո միասին գնայինք մանկական զբոսայգի՝ լեգենդար հերոս Նելսոն Ստեփանյանի հուշարձանին ծաղկեպսակ դնելու:

Շա՜տ պիոներներ ու հասակավոր մարդիկ էին շրջապատել հերոսի հուշարձանը:

— Վահան, նայի՛ր, այն քեռին ավիոմոդել դըրեց պատվանդանին,— շշնջաց իմ ընկեր Մանվելը:

Իրոք: Ծաղկեփնջերի մեջ դրված էր մի փոքրիկ ավիոմոդել: Ես ու Մանվելը կամաց մոտեցանք ու կարդացինք մակագրությունը. «Իմ մանկության անմահ ընկերոջը: Սուրիկից»:

Պատվանդանի մոտ կանգնել էր քեռին՝ գլուխը խոնարհած ու լուռ: Մանվելը անմիջապես մոտեցավ նրան ու հարցրեց.

— Դուք ճանաչու՞մ էիք Նելսոն Ստեփանյանին, քեռի:

— Այո՛:

— Կպատմե՞ք մեզ նրա կյանքից որևէ դեպք,— վրա տվեցի ես:

Քեռին բազմանշանակ նայեց ինձ, ապա Մանվելին ու ասաց.

— Ինչու՞ չէ, խնդրեմ:

Մենք շրջապատեցինք նրան:

— Մեր ու Նելսոնենց տները, երեխաներ, նույն փողոցում էին, համարյա իրար կողքի,— սկսեց նա:— Երկուսս էլ սովորում էինք Մաքսիմ Գորկու անվան դպրոցի վեցերորդ դասարանում: Քանի՜— քանի՜ անգամ միասին ոտքով գնացել ենք օդանավակայան՝ ինքնաթիռ տեսնելու: Նելսոնը աչքերը չէր հեռացնում արծաթափայլ ինքնաթիռներից, ապա հառաչելով ասում էր.

— Երանի՜ ես էլ օդաչու լինեի:

— Կդառնաս, ի՞նչ կա որ,— հուսադրում էի ես:

Մի օր էլ մեր դպրոցում կազմակերպվեց ավիոմոդելիստների խմբակ: Պետք է տեսնեիք, թե ինչպես էր հափշտակվել Նելսոնը ավիոմոդելի խմբակի աշխատանքներով: Որպես ղեկավարի օգնական, նա էր հասցնում մեզ բամբուկ, փայտիկներ, թուղթ, ռեզին, սոսինձ, սղոց:

Պատրաստված առաջին ավիոմոդելը ցնծություն պատճառեց Նելսոնին: Ոչ պակաս ուրախացանք նաև մենք:

Մի օր մեր ղեկավար ընկեր Գագիկն ասաց.

— Երեխանե՛ր, շուտով ավիոմոդելիստների միջդպրոցային մրցություն է լինելու. ովքե՞ր են ուզում մասնակցել մրցությանը:

— Բոլո՛րս:

Մենք ավելի եռանդուն կպանք գործի և, շատ չանցած, մոդելները պատրաստ էին: Ո՞վ չէր երազում մրցությունից հաղթող դուրս գալ:

— Իմ մոդելը պետք է ամենից բարձր ու հեռու թռչի,— ինքնավստահ ասում էր Նելսոնը:

Մենք շտապեցինք մրցադաշտ: Դեռ փողոց դուրս չեկած՝ հանդիպեցինք Նելլիին: Ասես նրա մոտ ինձ զարմացնելու համար՝ պարծանքով մոդելս անմիջապես լարեցի ու նետեցի վեր, որը մի փոքր ճախրելուց հետո ընկավ բանուկ փողոցը: Այդ պահին մի մեծ ավտոմեքենա անցավ և ջարդեց իմ մոդելի թևերը: Քիչ էր մնում արտասվեի: Հիմա ի՞նչ պետք է պատասխանեմ մեր ղեկավարին: Նելսոնը ձեռքիցս վերցրեց մոդելը, նայեց, ապա իր մոդելը մեկնեց ինձ:

— Մի՛ տխրիր, Սուրիկ, իմը վերցրու:

— Իսկ դու՞... չե՞ս մասնակցելու մրցությանը:

— Վերցրու՛, ասում եմ: Ես հիմա տանեմ ամրացնեմ թևերը: Դու վազի՛ր: Եթե ուշանամ, չսպասես: Իմ մոդելով մասնակցիր:

Ես վերցրեցի Նելսոնի ավիոմոդելը և շտապեցի մրցադաշտը: Շատ երեխաներ էին հավաքվել մրցադաշտում և անհամբեր սպասում էին մրցությանը: Ինձ տեսնելով ընկեր Գագիկը հարցրեց.

— Որտե՞ղ է Նելսոնը:

— Հիմա կգա:

— Ուշ է,—անհանգստացավ նա,—Նելսոնը միշտ ճշտապահ է, իսկ ինչու՞ է այսօր ուշանում:

Ես լռեցի:

Այդ պահին լսվեց մրցության դատավորի նախազգուշացնող ազդանշանը: Միանգամից օդի մեջ սուրացին ավիոմոդելները: Նետեցի նաև ես: Նելսոնի կարմիր աստղակիր ավիոմոդելը սկսեց ճախրել հրապարակում: «Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, չո՛րս»— բղավում էին տղաները: Մյուս բոլոր ավիոմոդելները մի քանի պտույտից հետո ցած իջան, իսկ աղջիկները շարունակում էին հաշվել ու ծափահարել. «Հի՛նգ, վե՛ց, յո՛թ»: Եվ յոթ ու կես պտույտից հետո Նելսոնի ավիոմոդելը հանդարտ իջավ հրապարակի կենտրոնում: Որոտացին ծափերը: Բոլորը նայում էին ինձ, իսկ ես փնտրում էի Նելսոնին: Ահա և նա: Մոտեցավ ու մատը դնելով շրթներին՝ շշնջաց.

— Ոչինչ չասես:

Բոլորը շնորհավորեցին իմ հաղթանակը: Նելսոնը նույնպես: Ընկեր Գագիկը մոտեցավ մեզ, երկուսիս թևանցելով առանձնացրեց ու ասաց.

— Շնորհավորում եմ քեզ, Նելսո՛ն:

— Ի՞նձ,—Նելսոնը զարմացավ:

— Մի՛ զարմացիր: Քո մոդելի աստղերից ճանաչեցի:—Հետո սկսեց բարձրաձայն ծիծաղել: Ծիծաղեցինք նաև մենք:

Լռեց քեռին:

— Հետո՞, քեռի,—հազիվ կմկմաց Մանվելը, որ հուզմունքից կարմրել էր:

— Հետո այն, որ այդ ընկերասեր, ազնիվ ավիոմոդելիստը դարձավ Սովետական Միության կրկնակի հերոս: Իսկ գիտե՞ք ինչպես:

— Պատմե՛ք, քեռի:

— Նա իր 300 մարտական թռիչքի ժամանակ ոչնչացրել է 600 ֆաշիստական ավտոմեքենա, 100 տանկ, 300 թնդանոթ, 30 ռազմական ինքնաթիռ, 9 նավ, մեկ շոգեքարշ, 50 վագոն, 500 հիտլերական... Վերջին անգամ Նելսոնը ընկերոջ փոխարեն մեն-մենակ դուրս է եկել ֆաշիստական վեց նավի դեմ...

Ընկերոջ փոխարեն...

Պատմում էր քեռին, իսկ նա, անմահ հերոսը, ասես լսում էր իր պատվանդանից և... ժպտում:




Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

# ՊՐԱԳԱՅԻ ԺԱՄԱՑՈՒՅՑԸ



Պրագան Չեխոսլովակիայի մայրաքաղաքն է: Գրեթե մեկ միլիոն մարդ է ապրում այնտեղ: Քաղաքի ծայրամասերում վեր են ձգվում բազմաթիվ գործարանային ծխնելույզներ, իսկ կենտրոնական մասը պահպանվում է այնպես, ինչպես եղել է միջին դարերում: Ասպետական մարմարե պալատներ, սրածայր աշտարակներ, եկեղեցական գմբեթներ, քարաշեն, գեղեցիկ կամուրջներ, որ ձգվում են Վլտավայի մի ափից մյուսը:



Մեծ հետաքրքրություն է ներկայացնում հատկապես քաղաքային խորհրդարանի աշտարակի ժամացույցը: Երկաթյա երկար սլաքները, որոնք մի քանի հատ են, ցույց են տալիս ոչ միայն ժամանակը, այլև արևածագի ու մայրամուտի ժամը: Մի այլ սլաքի օգնությամբ կարելի է իմանալ Լուսնի փոփոխությունները: Ժամացույցը հայտնում է նաև օրը, ամիսը և տարեթիվը: Առաջ այս ժամացույցը եղել է ժողովրդական օրացույց, բառի իսկական իմաստով. չէ՞ որ այն ժամանակ գոյություն չունեին ո՛չ ձեռագիր և ո՛չ էլ տպագիր օրացույցներ:

Օրվա կեսին ժամացույցը ցուցադրում է իր ոչ սովորական մեխանիզմի հրաշալիքները։ Այդ պահերին մարդկային մեծ բազմություն է հավաքվում խորհրդարանի շենքի առաջ։ Հենց որ խփում է ցերեկվա տասներկուսը, մի կողմ են քաշվում կողքերի երկու մուտքերը ծածկող վարագույրները։ Մուտքերից մեկում երևում են ինչ-որ կերպարանքներ, որոնք պատկերում են 12 առաքյալներին։ Փոքր-ինչ օրորվելով նրանք գնում են դեպի դիմացի մուտքը և անհետանում այնտեղ։ Ապա անցնում է Քրիստոսը, որից հետո վարագույրները նորից փակվում են։ Բայց ահա բացվում է փոքրիկ դուռը, դուրս է ոստնում մի գեղեցիկ աքաղաղ և բարձր ծուղրուղու կանչում։ Հանկարծ կենդանություն են առնում ժամացույցը շրջապատող կերպարանքները։ Կմախքը, որն իր մեջ պատկերում է մահը, շարժում է գերանդին։ Ժլատը քծնի ժպիտով օրորում է կաշվե քսակը։ Ինքնահավան գեղեցկուհին ուղղում է շորերը և նայում հայելու մեջ, որ հրճվի իր գեղեցկությամբ։









Այս հրաշալի ժամացույցը պատրաստված է 1490 թվականին։ Վարպետի ազգանունը հայտնի չէ, բայց ժողովրդի մեջ նա հայտնի է Յանուշ անունով։

Երբ ժամացույցը պատրաստ էր և սկսեց աշխատել, ամբողջ Պրագան քիչ էր մնում ուշքից գնար։ Ամեն օր տասներկուսին ծեծ ու կռիվ էր ծագում լավ տեղ կանգնելու համար։ Չէ՞ որ այն ժամանակ բացի եկեղեցական ձանձրալի արարողություններից, զվարճության այլ զբաղմունք չըկար։ Ժամացույցի աշխատանքը դարձավ մի տեսակ թատերական ներկայացում։ Նրա մասին Եվրոպան հիացմունքով էր խոսում։ Հեռավոր պետությունների ու քաղաքների ղեկավարները ցանկանում էին տեսնել հրաշք-ժամացույցը։ Այդ ժամանակ չեխական գահին նստած էր լեհ Վլադիսլավը։ Օտարերկրյա թագավորները բառեր չէին գտնում արտահայտելու իրենց հիացմունքը։ Հպարտությունից գլուխը բարձր պահած՝ Վլադիսլավը լըսում էր նրանց, ասես ժամացույց պատրաստողը վարպետը ոչ թե Յանուշն էր, այլ՝ ինքը։

Բայց ահա պալատականները նրան լուր հասցրին, թե երևելի պարոններից մի քանիսը փորձել են տեսակցել ժամագործին։

Վլադիսլավը խոժոռեց դեմքը և կատաղած ասաց.

—Գիտեմ, թե նրանք ինչ պիտի խոսեն նրա հետ։ Մեծ գումարով Յանուշը համաձայն կլինի նման ժամացույցներ սարքել նաև օտար քաղաքներում։ Գուցե այդ նորերն ավելի լավ լինեն։ Բայց դա չի՛ լինի։ Այստեղ կանչեք պալատական դահճին։

Կաշվե գոգնոցով, որի վրա արյան չորացած հետքեր կային, ներկայացավ դահիճը և խոնարհ գլուխ տվեց.

— Սպասում եմ ձեր հրամանին, ձերդ մեծություն։

— Այսօր երեկոյան վերցրու մի քանի օգնականների, գնա վարպետ Յանուշի տունը և սուր մեխով ծակիր նրա աչքերը,— հրամայեց թագավորը։

— Իսկ հետո սպանե՞մ,— հարցրեց դահիճը։

— Ո՛չ։ Կույր վիճակում նա արդեն վտանգավոր չէ։ Պրագայի ժամացույցը պետք է աշխարհում միակը լինի,—ձեռքը սպառնալից շարժեց Վլադիսլավը։

Եվ նույն գիշեր այդ հրեշավոր հրամանը ի կատար ածվեց։ Երեք օր վարպետը տառապում էր անմարդկային տանջանքներից։ Ոչ ոք չէր կարող օգնել նրան։ Ի վերջո ցավերը մեղմացան։ Վարպետ Յանուշը երկար ժամանակ

*լուռ էր։ Մի օր էլ նա իր մոտ կանչեց կնոջը և կամաց ասաց.*

*— Գնա թագավորի մոտ և նրան ասա, որ ժամացույցը դեռ կիսավարտ է։ Չէ՞ որ աքաղաղը ծուղրուղու կանչելուց առաջ պետք է երկարացնի վիզը։ Եվ ես, թեև կույր, այնուամենայնիվ կարող եմ դա անել։ Թագավորն ինքը կհամոզվի, թե ժամացույցը ինչքան հետաքրքիր կդառնա։*

*Վլադիսլավը ուշադիր լսեց իր կույր հպատակի ցանկությունը և խորհեց. «Իրոք, չկա մի աքաղաղ, որ առանց վիզը երկարացնելու ծուղրուղու կանչի։ Ինչպե՞ս է, որ ես դա չէի նկատել»։*

*Եվ նա մեծահոգաբար հրամայեց.*

*— Վարպետին տարեք ժամացույցի մոտ, թող կիսատը վերջացնի։*

*Դժբախտ վարպետին բերին այն շենքը, որտեղ աղմուկով աշխատում էր բարդ մեխանիզմը։ Հանուշը վերցրեց անկյունում դրված ծանր մուրճը և ամբողջ ուժով խփեց մեխանիզմին...*

*Պահակները հարձակվեցին նրա վրա։ Կարճատև պայքարից հետո նրանք խլեցին մուրճը։ Բայց ուշ էր։ Այդ հանճարեղ ստեղծագործության սիրտը ջարդված էր արդեն։*

*Վլադիսլավ թագավորը փրփրեց կատաղությունից։ Նա հրամայեց Հանուշին նետել Պրագայի կրեմլի ստորգետնյա նկուղը։*

*— Թող անհետների բաժին դառնա այդ անիծյալ գանգը, որտեղ միտք ծագեց ըմբոստանալ թագավորի դեմ։*

*Անցան շատ ու շատ տարիներ... Մի ուրիշ վարպետ նորոգեց մեխանիզմը, և ժամացույցի հնչակը նորից տարածվեց աշխարհով մեկ։ Եվ այսօր էլ հազարավոր մարդիկ զարմանքով նայում են հրաշք-ժամացույցին, որը տանջանք ու մահ բերեց իր հանճարեղ վարպետին։*




**Ֆ**րանսիական դրոշակի շերտերը հավասար լայնություն չունեն։ Կապույտ, սպիտակ և կարմիր գույների հարաբերությունը այսպիսին է՝ 30, 33, 37։ Եվ սա պատահական չէ։ Սկզբում բոլոր գույները հավասար լայնություն ունեին, սակայն կապույտը կարմրից ավելի լայն էր երևում։ Իսկ այժմ անհավասար լայնություն ունեցող շերտերը մարդու աչքին հավասար են թվում։

**Ե**վրոպայի մի քանի քաղաքներում շոգ օրերին փողոցները ջրում են ոչ թե սովորական, այլ՝ ծովի ջրով։ Առաջին անգամ այդպես վարվել են Լոնդոնում 1860 թվականին։ Դրա առավելությունն այն է, որ խոնավությունն ավելի երկար է մնում, և օրգանական նյութերը չեն նեխում։

**Մ**ոսկվայի «Յունի տեխնիկ» գործարանը թողարկում է այնքան փոքր ռադիոընդունիչ, որ հարմարեցվում է ակնոցի շրջանակի վրա։ Ավտոբուսում կամ տուրիստական արշավի գնալիս կարելի է ռադիո լսել

**Ջ**կան ալյուրը իր մեջ պարունակում է 80 տոկոս սպիտակուց և այդ պատճառով էլ 5 անգամ ավելի սննդարար է այն ծկից, որից ինքն է պատրաստված։

## *Երկհարկանի լիճը*

**Հ**յուսիսային Ալյասկայում կա տարօրինակ մի լիճ, որը կոչվում է Նուվուկ։ Այս լճի ջուրը բաղկացած է երկու շերտից. վերին մասը քաղցրահամ է, իսկ ներքինը՝ աղի։ Սովորաբար քամին ու հոսանքները խառնում են լճերի ջուրը։ Բայց Նուվուկում գոյություն ունի հաստատուն սահման, որը բաժանում է քաղցրահամը աղի ջրից։ Դա բացատրվում է նրանով, որ Նուվուկ լիճը զուրկ է հոսանքից և տարվա մեծ մասը սառցով պատված լինելու պատճառով զերծ է քամու ազդեցությունից։

Գիտնականները ենթադրում են, որ ցամաքի բարձրացման հետևանքով ժամանակին ջրի այդ հատվածը կտրվել է ծովից և դարձել լիճ, դրա համար էլ ջրի ներքևի «հարկը» աղի է։ Իսկ քաղցրահամ ջուրը գոյանում է ձյան տեղումներից ու գարնանային ձնհալքից։

Հետաքրքրական է, որ Նուվուկ լճի տարբեր «հարկերում» օրգանական կյանքը տարբեր է։ Վերևում ապրում են այնպիսի կենդանիներ ու բույսեր, որոնք հանդիպում են մոտակա քաղցրահամ ջրերում ու գետերում։ Իսկ ներքևի «հարկը» ամեն ինչով հիշեցնում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսը։



## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՀԱՇԻՎ

*ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ*

Երեկոյան, երբ Զարմիկը լույսը հանգցրել էր և պառկել քնելու, հանկարծ հիշեց, որ առավոտյան նա պետք է դասագիրք, տետրակ և ուրիշ մանր-մունր բաներ գնի: «Պետք է հենց հիմա հայրիկից փող վերցնել, — մտածեց նա, — թե չէ առավոտյան նա ինձանից շուտ է արթնանում և գնում գործի»:

Բայց իսկույն հիշեց, որ իր գրպանում փող ունի: «Գուցե կբավականացնի՞, — մտածեց նա: — Այդ դեպքում կարիք չկա հայրիկից վերցնելու»:

Նա ուզեց լույսը վառել և ստուգել իր գրպանի դրամը, բայց փոքրիկ քույրը և եղբայրը քնած էին, կարող էին արթնանալ:

Նա գտավ ելքը: Վերցրեց գրպանից ամբողջ դրամը, շոշափելով ջոկեց ըստ մեծության: «Ահա,— մտածեց նա,— ամենափոքր չափսինը՝ տասկոպեկանոցներն են: Միջակ չափսինը՝ քսանկոպեկանոցներ: Իսկ մեծ չափսինը՝ երեքկոպեկանոցներ»...

Նա հաշվեց ընդհանուր գումարը: Ճիշտ այնքան էր, որքան նրան պետք էր: Շուտ եկավ կողքի վրա և քնեց:

Որքան մեծ եղավ նրա զարմանքն ու ափսոսանքը, երբ արթնանալով, Զարմիկը նկատեց, որ մըթության մեջ սխալվել էր... Մանր դրամները, որ նրա կարծիքով տասկոպեկանոցներ պիտի լինեին, երկուկոպեկանոցներ էին: Այն, որ նա կարծել էր քսանկոպեկանոցներ, դուրս եկան տասնհինգկոպեկանոցներ: Եվ միայն երեքկոպեկանոցների փոխարեն էր, որ այժմ դրված էին հինգկոպեկանոցներ, այսինքն՝ երկուական կոպեկով ավելի: Իսկ մյուս երկու դեպքում նա «տուժել» էր...



«Հետաքրքիր է, — մտածեց նա,— որքանո՞վ է պակասում իմ դրամը»...

Նա հաշվեց և չհավատաց իր աչքերին: Բոլոր դրամները փոխվել էին, բայց գումարը նույնն էր...

Զարմիկը հաշվեց նորից ու նորից, բայց գումարը նույնն էր, առանց մի կոպեկի տարբերության:

Իսկ որքա՞ն էր...

**ԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ—ԾԱԾԿԱԳԻՐ**



*1. Գրական ժանր: 2. Աղայանի հեքիաթներից: 3. Սովետահայ կին գրող: 4. Հայ տաղանդավոր բանաստեղծ, որը 1915 թ. ապրիլին զոհ գնաց թուրք ջարդարարների եղեռնին: 5. Հայ մեծ դրամատուրգ, որն սկսել է ստեղծագործել 40 տարեկան հասակում և աշխատել Թիֆլիսի փոխարքայի մոտ, որպես թարգմանիչ: 6. Հայ նշանավոր բանաստեղծ, «Բանվորուհու օրորը» բանաստեղծության հեղինակը: 7. Չափածոյի տեսակ: 8. Հայ խոշորագույն երգիծաբան, որը ապրել է հիսուն տարի: 9. Նար-Դոսի վեպերից: 10. Հայ աշխարհահռչակ բանաստեղծ, որի հուշարձանի բացումը տեղի ունեցավ 1962 թ. հոկտեմբերին: 11. Հայ գրող-դրամատուրգ, որը միաժամանակ եղել է նշանավոր դերասան:*

*Հորիզոնական սյունակները ճիշտ լրացնելուց հետո, ուղղահայաց սյունակներից մեկում դուք կկարդաք հայ մեծագույն բանաստեղծներից մեկի անուն-ազգանունը:*

*Կազմեց՝ Հ. ԱՐԱՄՈՒՆԻ*

*(Էջմիածնի Խ. Աբովյանի անվան դպրոցի աշակերտ)*



# Հանելուկներ



* * *

Մի նեղուց կա
Աշխարհում,
Բայց անունը
Չեմ ասում:
Բաժանում է
Նա երկու
Օվկիանոսներ
Ահարկու.

Երկու երկիր,
Երկու ծով,
Թերակղզի
Երկու նոր,
Երկու հսկա
Մայր ցամաք՝
Երկու ափեր
Ջյունածածկ:

* * *

Այն ի՞նչն է, ի՞նչ,
Յոթը տառ,
Յոթ հնչյունով
Ծանոթ բառ,
Թե դու այն լավ
Իմանաս,
Ամեն գրած
Կկարդաս:

*ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ*

## ԽԱՉԲԱՌ — ԾԱՂԻԿՆԵՐ

*Եղած տառերի օգնությամբ լրացրեք [illegible] ծաղիկների անունները:*



*Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ «ՊԻՈՆԵՐ» №2

«ԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ—ԾԱԾԿԱԳԻՐ» *1. Վարուժան: 2. Թումանյան: 3. Շահազիզ: 4. Սիմոնով: 5. Գոնչարով: 6. Շոլոխով: 7. Մոպասան: 8. Պարոնյան: 9. «Հացավան»: 10. Սարոյան: 11. Դոզոխյան: 12. «Բավարան»: Ծածկագիրը՝ Հովհաննիսյան:*

ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝ Սամվել Գևորգյանը (Թալինի շրջան, գ. Վերին Թալին), Լիլյա Խալաբյանը (Իջևանի շրջան, գյուղ Վերին Աղդան), Լիդա Գրիգորյանը (Արտաշատի շրջան, գյուղ Կանաչուտ), Էմմա Գասպարյանը (Լենինական), Ժաննա Մուշեղյանը (Երևան), Ռուբիկ Ֆիլյանը (Երևան):


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:*

*ՎՖ 09936 Պատվեր՝ 504: Տպաքանակ՝ 14300: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 1/IV 1963 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91:*

Գինը 20 կ.






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

Ծանր օրեր էին Ռուսաստանի համար: Ֆրանսիական բանակը ժամ առ ժամ խորանում էր երկրում և շուտով կմոտենար Մոսկվային ու մայրաքաղաք Պետերբուրգին։ Երկիրը խուճապի ու տագնապի մեջ էր։ Դրիսսեի մոտ ջարդվելուց հետո, Ալեքսանդր երկրորդը հրաժարվել էր գլխավոր հրամանատարությունից: Բանակը ղեկավարում էին օտարազգի հրամանատարները, որոնց անձնական շահն ու ցարի բարյացակամությունն ավելի էին հետաքրքրում, քան Ռուսաստանի բախտը։

Ռուսաստանը կանգնած էր կործանման եզրին։ Ո՞րն է, ելքը, որտե՞ղ է այն ամենակարող ձեռքը, որն ի մի կհավաքի հայրենիքի համար կռվելու պատրաստ ուժերը, կբարձրացնի ընկճված ոգին։ Այդ օրհասական պահին բոլորի հայացքներն ուղղվեցին դեպի գեներալ Կուտուզովը, որը ցարի կողմից արժանանալով անվստահության, ազատվել էր բանակից և քաշվել իր գյուղը՝ վիրավորված, մեկուսացված։

Եվ ահա Կուտուզովին հանձնարարվեց գերագույն հրամանատարությունը։ Մեծ զորավարը զգաց, որ շատ ծանր ու պատասխանատու դեր է վիճակված իրեն։ Չէ՞ որ նա գործ ուներ Նապոլեոնի անպարտելի համարվող բանակի հետ, իսկ իր ձեռքի տակ էր մի շարք պարտություններ կրած, հուսալքված, նահանջող ռուսական բանակը:

Կուտուզովը ապավինեց իր ռազմական հմտությանը և հայրենասիրական խղճին։ Նա ձգտում էր մանևրներով կազմալուծել թշնամուն, կտրել նրան իր թիկունքից ու ոչնչացնել։ Սակայն երբ ֆրանսիացիները մոտեցան Մոսկվային, Կուտուզովը ընդդառաջելով կռվելու պատրաստ բանակի ու ժողովըրդի ցանկությանը, ստիպված եղավ ճակատամարտ տալ։

Եվ ահա Բորոդինոն...

«Իմ բոլոր ճակատամարտերից ամենասարսափելին Բորոդինոն էր, որ տվի Մոսկվայի մոտ,— գրեց հետագայում Նապոլեոնը,— որտեղ ֆրանսիացիները ցույց տվին, որ արժանի են հաղթանակ տանելու, իսկ ռուսները արժանի եղան անպարտելի լինելու...»



## ԿՈՒՏՈՒԶՈՎ

Բորոդինոյի մոտ ռուսները ռազմական առումով պարտվեցին, բայց դա ավելի ուժգին բորբոքեց հայրենասիրական ըզգացումը և ատելությունը թշնամու հանդեպ։

Ծանր օրհասը կախվեց Մոսկվայի վրա։

— Թողնել Մոսկվան, այրել, թշնամուն զրկել պարենից և ապաստանից,— հոգեկան ծանր տվայտանքներից հետո վճռեց բազմափորձ զորավարը։

Ուրիշ ելք չկար։

Բայց ֆրանսիական բանակը չէր կարող երկար մնալ ցուրտ ու ամայի Մոսկվայում, և ըսկըսվեց մեծ նահանջը։ Մի կողմից ռուսական բանակն էր հետապնդում թշնամուն, մյուս կողմից հարվածում էին ժողովրդական պարտիզանական ջոկատները։ 600 հազարանոց բանակից Նապոլեոնը Ֆրանսիա տարավ 50 հազար զինվոր։ Մնացածը սառեցին ճանապարհին և ոչնչացվեցին ռուսական բանակի կողմից։

Ցարը կամենում էր, որ Կուտուզովը հետապնդեր թշնամուն մինչև Փարիզ։ Կուտուզովը դա անմտություն էր համարում՝ հաշվի առնելով հյուծված բանակի ու երկրի վիճակը։ Սակայն ստիպված էր ենթարկվել։

Դեռևս նոր էին անցել ռուսական սահմանից, երբ զառամյալ զորավարը, որն արդեն հազիվ էր նստում ձիու վրա, հիվանդացավ ու մահացավ Բունցլաուում 1813 թ. ապրիլի 28-ին։

Մեծ են Կուտուզովի ծառայությունները ռազմական արվեստի պատմության ու ռուս ժողովրդի հերոսական պայքարի տարեգրության մեջ։

Նա էր Սուվորովի ստեղծած ռազմարվեստի արժանավոր ժառանգորդն ու զարգացնողը: Թե ինչքան բարձր էր գնահատում Սուվորովը Կուտուզովի ռազմական տաղանդը, դա ցույց է տալիս Իզմայիլի բերդի գրավման հետ կապված հետևյալ դեպքը։ Դեռևս բերդը չգրաված, Սուվորովը գրել էր Եկատերինա երկրորդին, թե այն գրավված է և Կուտուզովը նշանակված է բերդի պարետ։

— Ինչու՞ էիք այդպես գրել,— իմանալով այդ մասին՝ հետագայում հարցրել է Կուտուզովը:

— Ես ճանաչում եմ Կուտուզովին, Կուտուզովն էլ ճանաչում է ինձ,— պատասխանել էր Սուվորովը։— Ես գիտեմ, որ Կուտուզովը կլիներ Իզմայիլում, Իսկ եթե մենք չգրավեինք Իզմայիլը, Սուվորովը կմեռներ նրա պատերի տակ, Կուտուզովը նույնպես:

Լրացավ ռուս մեծ զորավար ու հայրենասեր Միխայիլ Իլլարիոնովիչ Կուտուզովի մահվան 150-ամյակը։



20 կ.

77806



ՊԵՆԵԼՈՊԱ



ԱԻԴԱ

Ահա թէ պլաստիլինից
ինչպիսի քանդակներ է
անում 9 տարեկան
ՍԵԴԱ ԲԵՔԱՐՅԱՆԸ



ԱՆՈՒՇ